# ՍՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ

**Հաստատված է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1977 թվականի մայիսի 27-ի հրամանագրով**

*Տեքստը՝ Ս. ՄԻԽԱԼԿՈՎԻ և Գ. ԷԼ-ՌԵԳԻՍՏԱՆԻ*

*Երաժշտությունը՝ Ա. Վ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻ*

Союз нерушимый республик свободных
Сплотила навеки Великая Русь.
Да здравствует созданный волей народов
Единый, могучий Советский Союз!

Славься, Отечество наше свободное,
Дружбы народов надежный оплот!
Партия Ленина — сила народная
Нас к торжеству коммунизма ведет!

Сквозь грозы сияло нам солнце свободы,
И Ленин великий нам путь озарил:
На правое дело он поднял народы,
На труд и на подвиги нас вдохновил!

Славься, Отечество наше свободное,
Дружбы народов надежный оплот!
Партия Ленина — сила народная
Нас к торжеству коммунизма ведет!

В победе бессмертных идей коммунизма
Мы видим грядущее нашей страны,
И Красному знамени славной Отчизны
Мы будем всегда беззаветно верны!

Славься, Отечество наше свободное,
Дружбы народов надежный оплот!
Партия Ленина — сила народная
Нас к торжеству коммунизма ведет!

digitised by A.R.A.R.@



# ՄԵԾԱՆՈՒՄ Է ՀԱՐՅՈՒՐ ՈՒ ՄԵԿ ՏԱՐՈՎ

*ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

Պապիկը խորհրդավոր չէր. կրծքին փռված ճեպ-ճերմակ, ամպոտ մորուք չուներ: Նա մորուքը խուզել էր և մոռացել իմացած բոլոր հեքիաթները: Եկել նըստել էր անտառի փեշի ճամփաբաժանում և մարդ էրման գալիս, որ հետը կրուցի: Քանի՞ տարեկան կլինի այս պապիկը: Հարյո՞ւր: Հարցնելն ամոթ չէ, չիմանալն է ամոթ:

— Քանի՞ տարեկան ես, պապի՛կ:

— Դու ինձ ասա՛, գա՛ռ ջան, խնձորի կտրած կեսը ինչի՞ նման է, տարիքս քեզ նվիրեմ,— այնպես պապավարի, ջերմ խոսեց պապիկը, որ Վահագնի աչք-ունքը ժպիտ դարձավ:

Խնձորի կտրած կեսը ինչի՞ նման է. մեջտեղից կտրած լուսնի՞... թե՞ դեղձի... դեղձի կեսը իր կեսի նման կլինի: Ուրեմն՝ խնձորի կտրած կեսն էլ...

— Խնձորի կտրած կեսը, պապի՛կ ջան, իր կեսի նման է:

— Ապրե՛ս: Տարի՞քս: Կորցրել եմ: Խնձորենիներ եմ պատվաստում, երեխաների հետ եմ խոսում, արևին եմ նայում, ճամփաներին եմ նայում, քո աչքերին եմ նայում, խելոք աչքեր ունես... Տարիքս շուտ եմ կորցրել: Երեխաներն ու խնձորենիները սիրուն են, չէ՞...

Պապիկը կորցրել է տարիքը: Դպրոցում գրիչներ ես կորցնում, գիրք ես կորցնում, հետո փնտրում ես ու գտնում: Եթե չես գտնում՝ հայրիկը, մայրիկը նորն են առնում: Իսկ եթե պապիկն իր տարիքը չգտնի, նորը որտեղի՞ց կառնի, ո՞վ կառնի:

— Որտե՞ղ ես կորցրել տարիքդ, պապի՛կ: Վերջին անգամ ե՞րբ ես տեսել,— հետաքրքրությունից Վահագնի աչքերը լայնացել էին, թվում էր, թե ամբողջ երեսը աչքեր են, լուսավոր, մաքուր ու միամիտ աչքեր...

— Հաշվից ո՞նց ես,— հարցնում է պապիկը:

— Լա՛վ: Դպրոցական օլիմպիադայում պատվոգիր եմ ստացել,— պարծեցավ Վահագնը՝ իրեն վերագրելով ութերորդցի իր եղբոր ստացած պատվոգիրը:

— Այդ դեպքում ասա՝ դու ամեն տարի քանի՞ տարով ես մեծանում:

Հանելո՞ւկ է ասում, թե՞ նոր խնդիր: Ամեն տարի՝ մի տարով:

— Մի՛...

— Իսկ ես հարյուր ու մի: Դե, եթե կարողանաս հաշվել, թե ես քանի տարեկան եմ, մի պատվոգիր էլ ես քեզ կտամ...

Էս պապիկը կրծքին փռված ճերմակ մորուք չունի, հեքիաթի ծերունի չէ, նաև նման չէ մանկական գունազարդ ամսագրերում տպագրված պապիկների նկարներին... Ո՞ւմ է վարմացնում, հիմա երկնքով ոչ թե գորգեր են թռչում, այլ՝ սավառնակներ, տիեզերագնացները հիմա իրենց համար ակոսում են տիեզերքի անարատ կուրծքը, իսկ այս պապիկը իր տարիքը խնդիր է դարձնում, կարո՞ղ ես՝ լուծիր. տարվա մեջ հարյուր ու մի տարով մեծանում է: Չես կարող միանգամից ասել սխալ է, որովհետև ինչո՞ւ պետք է սխալ լինի: Հետո ի՞նչ, որ ձեռքին կախարդական գավազան չունի, հեքիաթների ծերունների նման չի վարմացնում, կարմիր, սև ու ճերմակ մալեր չի վառում ու չեն հայտնվում հեքիաթների սև ու կարմիր ու սպիտակ ձիերը... Ա՛յ, հանելուկ-խնդիրը հիմա է: Թե չէ խնձորի կեսը իր կեսի նման է, պարզ չէ՞, հո Գոհարի թշերի նման չի՞ լինելու... Թեև դրանց նման էլ է:

— Հը՛,— ասաց պապիկը,— հո՞ւյս կա իմ տարիքից:

Վահագնը ձեռքը բարձրացրեց, մատը տարավ բերանը և սկսեց եղունգը կրծել: Կես խնձորի նմանակը



digitised by A.R.A.R.@

գտնելու համար «հինգ» կստանար: Բա ո՞նց: Մի րոպեում լուծեց: Իսկ այս մեկը: Պապիկը խնձոր ասաց, խնձորենի ասաց, երեխաներ ասաց: Խնդրի լուծման բանալին էլ, կարծես տվել է: Մնում է չենթարկվել տարվա պտույտին: Ինքը տարին մի տարով է մեծանում, քույրիկը մի տարով է մեծանում, հայրիկը, մայրիկը մի-մի տարով են մեծանում, ամեն մեկի համար տարին պտտվում ու գալիս է, ճիշտ նույն օրը նրանց ասում. «Այսօր ձեր ծննդյան օրն է, մի տարով էլ մեծացաք: Շնորհավոր»: Բոլորը մի տարով են մեծանում, ամբողջ աշխարհն էլ է մի տարով մեծանում, լուսինն էլ, արևն էլ, աստղերն էլ, հին եգիպտական բուրգերն էլ, Հովհաննես Թումանյանի Շունն ու Կատուն էլ, բոլորը, բոլորը, իսկ այս պապիկը... Եթե, իրոք, տարին հարյուր ու մի տարով է մեծանում, ու եթե նրա իրական տարիքը հաշվենք ութսունութ-իննսուն, տարեկան միջին հաշվով ութսունինը բազմապատկենք երևակայական հարյուր ու մի տարով, կստանանք ութ հազար ինը հարյուր ութսունինը... Ա՛յ տարիք: Դպրոցում եթե ասի՝ հանդիպել է մի ծերունու, որը կորցրել էր տարիքը, ինքը գտավ և նրան վերադարձրեց համարյա թե ինը հազար տարեկան հասակը, ո՞վ կհավատա: Իսկ ինքը չի հավատում: Օրենքով այս հայրիկը, այս պապիկը, այս պապի պապիկը, աշխարհի ամենատարիքով մարդը պետք է լինի՝ կնճռապատ, մորուքը ոտքերի տակ ընկած ու պիտի քայլելիս գայթի: Ամոթ չէ՞ հարցնել, թե՝ պապիկ, դու ճի՞շտ ես ասում: Աշխարհի ամենատարիքով մարդը ինչպե՞ս կարող է սուտ խոսել: Ավելի լավ է դու մտածես ու գտնես քեզ տրված խնդրի պատասխանը: Հարցի պատասխանը վճռում են նաև հարցեր առաջադրելով: Սա ես եմ, իմ դիմաց պապիկն է, իմ մտքում նրա տված հարցն է. ինչպե՞ս է, որ ուրիշները տարին մեկ տարով են մեծանում, իսկ այս հայրիկը՝ հարյուր ու մի տարով: Պապիկը խնձորենի ասաց, երեխաներ ասաց: Եվ հանկարծ Վահագնի միտքը փայլեց.

— Պապի՛կ, խնձորենու արմատնե՞րն են մեծ, բո՞ւնը, ճյուղե՞րը, խնձորնե՞րը, տերևնե՞րը, ծաղկաթերթե՞րը, թե՞ ստվերները:

Պապիկը կզաստացավ.

— Արմատը ծառով է մեծ, ծառն արմատով է մեծ, արմատը մատով է մեծ, մատը՝ ճյուղերով, ճյուղերը՝ խնձորներով, խնձորները՝ տերևներով, տերևները՝ արևներով, արևները՝ բարևներով, բարևները՝ վերևներով... Արևը հողին է կյանք տալիս, հողը՝ արմատին, արմատը՝ մատին, մատը՝ ճյուղերին, ճյուղերը՝ խնձորներին, խնձորները՝ տերևներին, տերևները՝ վերևներին, վերևները՝ արևներին... Արևն ամեն տեղ իր արմատն է փնտրում, սարերի մեջ, ջրերի մեջ, հողերի մեջ...

— Ներողություն, պապի՛կ, դու ունես տասներկու երեխա, ճի՞շտ է:

— Ճիշտ է, տասներկու երեխա, քեզ էլ մատաղ, նրանց էլ:

— Ունես վաթսունչորս թոռ-երեխա, ճի՞շտ է:

— Ճիշտ է, ունեմ վաթսունչորս թոռ-երեխա, քեզ էլ մատաղ, նրանց էլ:

— Ունես քսանչորս ծոռ-երեխա, ճի՞շտ է:

— Ճիշտ է, ունեմ քսանչորս ծոռ-երեխա, քեզ էլ մատաղ, նրանց էլ:

— Երեխա-երեխա, թոռ-երեխա, ծոռ-երեխա, տարին հարյուր ծնունդ— հարյուր տարի քո բաժին մի տարվա հետ խառը, ճի՞շտ է:

— Ճիշտ է: Նրանց ծննդին էլ մատաղ, քո ծննդին էլ:

— Տարվա մեջ քո բաժին մի ծննդյան օրն էլ գումարենք եղած հարյուրին, կստացվի՝ հարյուր ու մեկ: Տարին հարյուր ու մեկ անգամ շնորհավոր... Պապի՛կ, դու խնձորենու արմատի նման ես: Ծառի նման ես:

— Ապրե՜ս, Վահա՛գն, դու իմաստուն տղա ես, բարի՜ ճամփա, գնա՛, գնա՛, գնա՛...

— Ո՞ւր է բարձրանում խնձորենին:

— Դեպի սարերը, դեպի արևը:

— Ո՞ւր են բարձրանում ճամփաները:

— Դեպի սարերը, դեպի արևը:

— Ո՞ւր է բարձրանում արևը:

— Դեպի իր ծննդյան օրը:

— Իսկ որտե՞ղ է արևի ծննդյան օրը:

— Խնձորենու արմատների մեջ, հողի մեջ, երեխաների հոգու մեջ...

— Ես ո՞ւր գնամ այս ճամփաներով...

— Վե՜ր, վե՜ր, վե՜ր, վե՜ր: Գնա՛, գնա՛, գնա՛, հա՜ բարձրացիր...

— Բայց ես մենակ եմ, վախենում եմ հեռուներից...

— Չեղա՛վ, Վահա՛գն, սարերը մոտիկ են, արևները մոտիկ են, հեռուները մոտիկ են, հեռու բան չկա... դու գնա, գնա և կհասնես...

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



9599-Սհ



digitised by A.R.A.R.@

# ԱՄԱՌԱՅԻՆ ՁԱՅՆԵՐ

*ԱՐՇԱՎԻՐ ԱՎԱԳՅԱՆ*

Առվակները երգում են միշտ միօրինակ,
Բայց ամառը հազարավոր երգեր գիտի,
Բազմած բարձր երկնքի մեջ:
Նա երգում է արևի պես,
և հնչյունները ոսկեգույն
ողողում են դաշտ ու անտառ,
լցվում սիրտը մանուկների:

Նրա երգից
մանուկ ամպերն են արթնանում ծմակի մեջ,
հողից սունկերն են բարձրանում զգուշորեն,
և բներում թռչունների՝
սաղարթների ու թփերի մեջ թաքնված
ձվերի տեղ հայտնվում են
ձագուկները դեղնակտուց:

Ծնծղուկները ծլվլում են միօրինակ,
բայց ամառը հազարավոր երգեր գիտի,
նա երգում է տերևների ձայնով կանաչ
ու ճյուղերին շարվում են լուռ
պտուղները ամեն գույնի,
որ երգում են ախորժալուր
անուշ երգեր:

Նրա երգից
ծովն է բացում ծոցն իր կապույտ ամենքի դեմ,
դաշտ ու անտառ
հազար ու մի գաղտնիքներ են հուշում մարդկանց,
և ճամփեքը ամեն կողմից քաղաք գալով՝
շուկաներում հավաքում են
ամռան ձայները բոցկլտուն:

Մղրիդները երգում են միշտ միօրինակ,
բայց ամառը հազարավոր երգեր գիտի:
Նա երգում է ջրերի պես,
որ կայծկլտում են մարգերում լուսնյակի տակ,
ձմերուկի սիրտը լցվում ավիշի պես
և շերտ առ շերտ խավարի մեջ
լուսավորում ուղեղները կաղամբների:

Նրա երգից մարգերի մեջ
կորիզների միջուկները ամրանում են
հավատի պես անմահության,
ծաղիկները սերմ են ձուլում,
որ պահպանեն հավերժական բուրմունքն իրենց
և հասկերը արտերի մեջ
փառաբանում են արևի ծնունդն արդար...



# ՀՐԱՎԵՐ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Մտիր անտառը քո նախնիների
Ու ապրիր կանաչ վրանների տակ,
Թարգմանիր երգը սեգ կաղնիների
Եվ առվակների կարկաչը հստակ:

Սովորիր լեզուն միայնակ հավքի,
Սովորիր լեզուն ամպերի ճերմակ,
Խոտի հրճվանքը, ծիծաղը ծաղկի,
Եվ շավիղների խոհերը կեռման:

Թող անտառը քեզ լինի դաստիարակ
Քո ամենօրյա մղումներին սուրբ,
Քո ակնթարթը ապրիր հասարակ
Եվ եղիր բարի, և եղիր անսուտ:

Եվ եղիր համեստ անտառի նման,
Եվ եղիր շոյող՝ թևի պես հովի,
Անցորդին ժպտա անտառի նման,
Ջրի պես վճիտ դու նայիր հովվին:

*Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*





digitised by A.R.A.R.@

60

# ՍԵԴԱՆԿԱՑԻՆԵՐԻ ԴՊՐՈՑԸ

*ՋՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ*

Տիգիլում դպրոց էր բացվում՝ Տիգիլում, Սեդանկայում և Ուստ-Տիգիլում բնակվող որսորդների, եղջերվաբույծների և ձկնորսների երեխաների համար։ Անհրաժեշտ էր խոսել ծնողների հետ, որպեսզի նրանք թույլ տային երեխաներին ապրել մեկ այլ ավանում։ Հարկավոր էր համոզել այն մարդկանց, ովքեր դարեր շարունակ ապրել էին տունդրայում, անսխալականորեն կարդում էին ուզածդ գազանի հետքերը, ոչ միայն ձյան, այլև եղջերվամամուռի վրա, տարածությունը չափում էին ոչ թե կիլոմետրերով, այլ գիշերներով, տարին բաժանում էին ոչ թե ամիսների, շաբաթների, օրերի, այլ՝ ձմռան և ոչ ձմռան, կարողանում էին հաշվել մինչև քսանը, նախ ձեռքի մատների, հետո ոտքի մատների վրա, ապա ապշում էին և արտասանում «մաչա», որ նշանակում էր «որտեղի՞ց գտնես»...

Սեդանկացիները՝ բոլորն առանց բացառության, տեղավորվել էին ոչ մեծ, զառիկող բլրակի ստորոտում։ Նրանք նստել էին ուղղակի գետնին։ Շատերը գրկներին մորթիների մեջ փաթաթված երեխաներ ունեին։ Նրանց մեջ բարձր էր երևում միայն Բագրատը, որ նստած էր կոճղին։

Ստուկալովը իր խոսքն սկսեց «տունգուտում»[1] բառով։ Դա նրա իմացած միակ կորյակերեն բառն էր։ Բոլորը բարձրաձայն ծիծաղեցին։ Ստուկալովը լայն ժպտաց և խնդրեց, որ Նատաշան առաջ գա։

— Բոլորը չգիտեն ռուսերեն,— ասաց նա Նատաշային, — այնպես որ, խնդրում եմ, թարգմանել իմ ասածները։

— Հիմա օգոստոսի կեսն է,— շարունակեց Ստուկալովը,—այնպես որ երկու շաբաթ հետո այն երեխաները, ում ութ տարին լրացել է, արդեն պետք է լինեն Տիգիլում։ Դպրոցում նրանց ոչ միայն պետք է դաս տան, այլև կերակրեն, քնելու հարմարություններ տան։

Նատաշայի համար հեշտ չէր այդ ամենը թարգմանել։ Կորյակերենում չկար «օգոստոս», «շաբաթ» բառերը։ Անենք՝ նույնիսկ «դպրոց» բառը, սեդանկացիները ավելի շուտ զգացին, քան գիտակցեցին, հասկացան, որ խոսքը վերաբերում է իրենց երեխաների համար շատ կարևոր բանի։ Նրանք նույնիսկ չգիտեին, որ մի քանի ավաններում, նույնիսկ Կրաշեննիկովի և Բերինգի ժամանակներից դպրոցներ են բացված, ուր սովորում էին, ճիշտ է, ոչ թե բնիկների, այլ եկվորների երեխաները։

— Այդ ի՞նչ է դուրս գալիս,— ասաց ծերունի որսորդը կորյակերեն, թեև հիանալի խոսում էր ռուսերեն։— Մենք այստեղ՝ ավանում ամեն օր պետք է թարմ բագրատ ունենք, իսկ մեր երեխաները ու թոռները այնտեղ՝ Տիգիլում միայն յուկոլայով պետք է սնվեն։

— Տիգիլում էլ են հաց թխելու,— ասաց Ստուկալովը, և Նատաշան թարգմանեց նրա ասածը՝ «հացը» անվանելով «բագրատ»։

— Ի՞նչ, ի՞նչ, — զարմացավ ծերունի որսորդը,—չէ՞ որ Բագրատն այստեղ մեզ մոտ է ապրում, այդ ինչպե՞ս է Տիգիլում թխելու։

— Տիգիլում մեկ ուրիշ Բագրատ է բագրատ թխելու,— ասաց Ստուկալովն ու ծիծաղեց։— Նատա՛շա, բացատրի՛ր նրանց, որ ամբողջ աշխարհում, բոլոր քաղաքներում ու գյուղերում բոլոր ժամանակներում մարդիկ թխել և թխում են հաց, և որ շուտով այդպես կլինի նաև ամբողջ Կամչատկայում...

— Ո՛չ, Օլե՛գ Ալեքսանդրովիչ, — ասաց Նատաշան,— ես այդ բանը չեմ թարգմանի նրանց։ Անկեղծ ասած, իմ հավատալն էլ չի գալիս, որ աշխարհում, ինչպես դուք եք ասում, բոլոր ժամանակներում թխել և թխում են հաց։ Ինձ թվում է ամբողջ աշխարհում, բոլոր ժամանակներում միայն մեզ մոտ՝ Սեդանկայում և միայն Բագրատն է հաց թխում։

— Բայց ծերունի որսորդին պետք է պատասխան տալ...

— Մի՛ անհանգստացեք, ես նրան ամեն ինչ կբացատրեմ։ Ես նրան և բոլորին կբացատրեմ, որ ամեն ինչ շատ լավ կլինի։ Ես նրանց կպատմեմ Լուկաշևսկու մասին, որը բուժում է մարդկանց և որն ուզում է, որ երեխաները դպրոց գնան։ Նրանք ինձ կհավատան։

Եվ Նատաշան երկար ժամանակ պատմում էր իր մայրենի լեզվով։ Նրան լուռ լսում էին նույնիսկ չարաճճի երեխաները։ Նա իր խոսքն ավարտեց.

— Կգա ժամանակ, երբ ձեր երեխաները կմեծանան և կբուժեն մարդկանց, ինչպես Լուկաշևսկին, հաց կթխեն, ինչպես Բագրատը, փաստաթղթեր կգրեն, ինչպես Ստուկալովը...

— Իսկ ինչո՞ւ բոլոր երեխաներին ուղարկել դպրոց,— ասաց ծեր որսորդը, — չէ՞ որ ոմանք էլ պետք է եղջերուներ պահեն տունդրայում, ոմանք էլ մորթի ձեռք բերեն, ձուկ որսան։ Ես, օրինակ, չեմ սովորել և չգիտեմ ինչ բան է դպրոցը, բայց սպիտակ նապաստակին չեմ վրիպի սպիտակ ձյան վրա։ Ու բոլորովին էլ հարկ չկա գնալ դպրոց, որպեսզի արածեցնես եղջերուներին, որպեսզի ընդու-

[1] Ընկեր։



digitised by A.R.A.R.@

նես հորթը, երբ սկսվում է ծինը, որպեսզի մորթես եղջերուին...

Այդպես, թե մոտավորապես այդպես, թարգմանեց Նատաշան ծերունի որսորդի խոսքերը։ Ու, հենց որ նա վերջացրեց, Ստուկալովից խոսք խնդրեց Բագրատը։

— Նատա՛շա, դու աշխատիր, որ մարդիկ ինձ հասկանան, թե չէ կյանքում դրանից վատ բան չկա, երբ մարդուն չեն հասկանում։ Ծերունի որսորդը իրավացի է իր հերթին։ Տունդրայում ո՞ւմ է պետք գրագիտությունը։ Թվում է, թե սա էլ է հասկանալի՝ մեկը բժիշկ կդառնա, մյուսը՝ ուսուցիչ, երրորդը՝ գրագիր, իսկ մնացածները թող մնան։ Այնպես որ, դուրս է գալիս, ծերունի որսորդը իրավացի է...

— Այդ ի՞նչ ես ասում, Բագրա՛տ,— զարմացավ Նատաշան, — ես դա չեմ թարգմանի։ —Մարդիկ հավատում են քեզ։

— Դու թարգմանի՛ր, Նատա՛շա, թարգմանի՛ր։ Ընկե՛ր Ստուկալով, դո՛ւ ասա, թող թարգմանի իմ խոսքերը, միևնույն է, այստեղ ռուսերեն հասկացողներ կան, այնպես որ նրանք արդեն որսացին իմ միտքը...

— Այնպես որ, ես կրկնում եմ, —շարունակեց Բագրատը։—Թըվում է, թե տունդրային գրագիտություն հարկավոր չէ։ Իմ հայրը քահանա էր, պապս էլ էր քահանա։ Նրանք մեր գյուղի միակ գրագետ մարդիկն էին։ Պատահում էր նայում էի հորս, պապիս և մեր համագյուղացիներին ու զարմանում էի։ Նրանց աչքերը տարբեր էին։ Երկար ժամանակ չէի կարողանում հասկանալ, թե ինչով են տարբերվում. աչքերը մնում էին աչքեր։ Բայց հետո գլխի ընկա, հորս և պապիս աչքերը աշխույժ էին, սրահայաց, դրանց մեջ անսովոր լույս կար և մեկ էլ՝ հպարտության պես բան։ Եվ միայն հետո հասկացա, որ դրա պատճառը այն էր, որ հայրս էլ, պապս էլ կրթված, զարգացած մարդիկ էին, գրքեր էին կարդում, այնքան տարբեր-տարբեր պատմություններ պատմում։ Եվ բացի այդ, նրանք ճանաչում էին մարդկանց, ճանաչում էին բարեկամներին, ճանաչում էին թշնամիներին։ Եվ որ ամենագլխավորն է, նրանք կարողանում էին կանխագուշակել։, Ահա թե ինչու էին նրանց աչքերը ուրիշ տեսակ, և ահա թե ինչու նրանց աչքերի մեջ ավելի շատ լույս կար։

Թող ձեր երեխաները դպրոց գնան։ Թող նրանք բժիշկ կամ ուսուցիչ չդառնան։ Իսկ եթե դառնան էլ, ապա մեկը կամ երկուսը, բայց ոչ բոլորը։ Մյուսները կվերադառնան տունդրա։ Հապա էլ ո՞ւր են գնալու։ Թող նրանց աչքերում լույս և հպարտություն հայտնվի։ Ու նրանք կապրեն նոր, հետաքրքիր կյանքով...

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@



Բագրատը խոսում էր կարճ նախադասություններով, խոսում էր դանդաղ, որպեսզի Նատաշան կարողանար թարգմանել: Մարդիկ նայում էին մեկ Բագրատին՝ կոճղի վրա բազմած, մեկ Նատաշային, որ կանգնած էր Ստուկալովի կողքին: Բագրատից հետո ոչ ոք չխոսեց: Սեղանկայում ութից-ինը տարեկան ընդամենը յոթ երեխա կար, և նրանց ծնողները հենց սկզբից համաձայնեցին երեխաներին ուղարկել Տիգիլի դպրոցը: Այնպես որ կարելի էր բոլորովին ժողով չանել: Բայց Ստուկալովը գտնում էր, որ անհրաժեշտ է բացատրական աշխատանք տանել բնակչության մեջ: Դեռ լավ է, որ Սեղանկայում տոհմիկ շաման չկար: Թե չէ որոշ ավաններում շատ ավելի վատ էր, շամանները ջուր էին պղտորում:

Ժողովից հետո Ստուկալովը գնաց Բագրատի մոտ: Նատաշան զբաղված էր խարույկի մոտ, որի վրա կախված էր մրոտված կաթսան:

— Դու ուղղակի փրկեցիր ինձ, Բագրա՛տ,—ասաց Ստուկալովը, սիգարը կպցնելով:

— Ոչ ոք ոչ ոքի չփրկեց: Ամեն ինչ առանց ինձ էլ նորմալ էր ընթանում: Բարի գործը մարդիկ առանց թարգմանելու էլ հասկանում են ու ընդունում... Նատա՛շա, հյուրասիրի՛ր հյուրին:

— Հիմա, Բագրա՛տ, միսը եփվում է:

— Անկեղծ ասած, չեմ հրաժարվի ուտելուց,—խոստովանեց Ստուկալովը,— երեկվանից բան չեմ կերել:

Ֆաներայի կտորով ծածկված ցածրիկ սեղանի վրա, միանման փայտե ափսեներ էին շարված, լի՝ մսով, յուկոլայով, խավիարով, թթու դրած հավամրգով: Մի քանի տեղ հացի կտորներ էին դրված:

Նատաշան խնդրեց Ստուկալովին սեղանը մոտեցնել Բագրատին և, ասես հրամանով, երեքն էլ վրա ընկան ուտելիքին: Ստուկալովն ուտում էր չփչփացնելով ու հը՜մ, հը՜մ անելով:

— Հրաշալի է,— ասաց նա ,— այսպիսի ուտելիքներից հետո երեք օր կարող ես այլևս չմտածել ստամոքսիդ մասին:

— Կերե՛ք, կերե՛ք,— ուրախ հյուրասիրում էր Նատաշան:

— Ինչո՞ւ տխրեցիր, Բագրա՛տ, —հարցրեց Ստուկալովը:

— Նոր կյանք է սկսվել: Նոր ժամանակներ են եկել: Իսկ իմ ժողովուրդը հաշվիր թե վերացել է աշխարհիս երեսից: Հազարավոր տարիներ ապրել են ու սպասել այս նոր կյանքին, այս նոր ժամանակներին, բայց չըհասան իրենց ուզածին... Ասում են, որ հիմա ծայրից ծայր սովետական իշխանություն է: Միայն թե այն, այն մյուս երկրում ես իմ աչքերով տեսա, որ մնացել էր միայն վառված հողը՝ ծածկված մարդկանց դիակներով:

— Ես քեզ ինչ-որ լավ չեմ հասկանում, Բագրա՛տ,—ասաց Ստուկալովը,— հայերի կոտորածի մասին բոլորս էլ լսել ենք, լըսել ենք նաև, որ պատժված են բազմաթիվ թուրք ավազակապետներ, որոնք սկսել են կոտորածը: Բայց ով ասաց, թե հիմա այնտեղ միայն այրված հող է մնացել՝ ծածկված դիակներով: Մի՞թե դու չգիտես, որ հիմա գոյություն ունի նոր Հայաստան, սոցիալիստական հանրապետություն:

— Ես իմ աչքերով եմ տեսել, թե ինչպես կոտորեցին ամբողջ գյուղերն ու հրդեհեցին դատարկ տները: Միշտ է, մայրս մահից առաջ ասում էր, որ միշտ կենդանի է մնում թեկուզ մեկ մարդ: Մնում է որպես հիշատակ: Ամեն գյուղից մեկը:

— Բագրա՛տ, ես միշտ կարդում եմ լրագրերը և բոլշևիկյան խոսք եմ ասում քեզ, որ կա Հայաստան հանրապետություն, որն իր գերբն ունի...

— Իսկ ի՞նչ բան է գերբ,— միջամտեց Նատաշան, որն ուշադիր լսում էր նրանց խոսակցությունը:

— Գերբը— դա... ինչպե՞ս բացատրեմ քեզ: Գերբը, ինչպես ասենք, ոգին է, դեմքը, աչքերը...

— Իսկ տունդրան գերբ ունի՞, —հարցրեց Նատաշան, չգիտես ինչու դիմելով ոչ թե Ստուկալովին, որն սկսել էր գերբի մասին խոսակցությունը, այլ՝ Բագրատին:

— Հավանաբար ունի,—ասաց Բագրատը,— հավանաբար, եղ-



digitised by A.R.A.R.@

ջերում է: Իսկ գուցե և հորիզոնը, գուցե և շնասահնակը: Չէ, ավելի շուտ՝ եղջերուն:

— Իսկ Հայաստանի՞նն ինչպիսին է,— հարցրեց Նատաշան Ստուկալովին:

— Նրանց գերբի վրա պատկերված է իրենց բիբլիական լեռը՝ Արարատը:

— Ինչո՞ւ տունդրայի գերբը եղջերու է, իսկ Հայաստանի գերբը՝ սար:

— Որովհետև տունդրան առանց եղջերվի չի կարելի պատկերացնել, Հայաստանը՝ առանց Արարատի,— ասաց Բագրատը:

— Ճիշտ է,— համաձայնեց Ստուկալովը,— դե, ես գնացի: Շնորհակալություն հյուրասիրության համար: Խաղաղություն ձեր ընտանիքին, ես գնացի:

— Նատա՛շա,— ասաց Բագրատը:— Ուտելի՛ք դիր ճամփորդի հետ:

— Կարիք չկա: Շնորհակալություն:

— Ճամփորդի հետ թեկուզ մի կտոր հաց պետք է դնել: Ճանապարհը տուն չէ: Ճանապարհին հազար ու մի բան կարող է պատահել: Ճանապարհին հարևաններ չկան:

— Նատա՛շա,— հարցրեց Բագրատը Ստուկալովի գնալուց հետո,— ինչպե՞ս թարգմանեցիր «քահանա» բառը, երբ այսօր խոսում էի իմ հոր և պապի մասին: Կարծում էի կասես «շաման», բայց ականջ դրի, կարծես թե այդ բառը չասացիր:

— Իսկ ես «շաման» չասացի: Չգիտեի ով է քահանան, բայց զգում էի, որ դա շամանը չէ: Մենք այստեղ շաման ունեինք, հանգիստ չէր տալիս մարդկանց: Եվ մի անգամ գիշերը նա կարաբինով սպանեց իր կնոջը, վերցրեց իր երկու աղջիկներին ու գնաց տունդրա:

— Իսկ որտե՞ղ է հիմա:

— Տունդրայում է ապրում: Ասում են տեսել են նրան մոտակայքում: Ցուրտ է խփել: Կարաբինով սնունդ է հայթայթում երեխաների համար ու ոչ մեկին մոտ չի թողնում:

— Քանի՞ տարեկան են աղջիկները:

— Շատ են փոքրիկ: Մեծը, հավանաբար, տասը տարեկան կլինի հիմա, փոքրը՝ ութ: Մեր որսորդներից մեկը ցանկացել էր մոտենալ նրա յուրտին, շամանը կարաբինով կտրել էր ճանապարհը և զգուշացրել, որ եթե մի քայլ էլ առաջ գա, կխփի: Այնպես որ քահանան, ես զգում էի, նույնպես շամանի նման բան է, բայց չէի կարող այդպես թարգմանել, մերոնք զայրացած են շամանի դեմ:

— Այնուամենայնիվ, ինչպե՞ս թարգմանեցիր «քահանան»:

— Ասացի, որ քո ծնողները Կուտխերի ցեղից են, դա մեր աստվածն է: Կուտխն է Կամչատկայում կյանքն ստեղծել ու հիմա գտնվում է երկնքում: Նա այնտեղից ամեն ինչ տեսնում է: Ասացի նաև, որ քո ծնողները բոլորովին ուրիշ տեսակ աչքեր են ունեցել: Ոչ այնպիսին, ինչպիսին ունեն բոլորը: Ես ասացի, որ նրանց աչքերը քոնի նման են եղել:



# ԵՐԱԶՆԵՐՈՎ ՀՐԱՇԱԼԻ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Պարզ, արևոտ ամռան օրին
Ծլվլում էր ծիտը ծառին,
Երկնքի պես մաքուր լճում
Ժիր սագիկն էր լողում, ճչում,
Թևերն ասես ծաղկաթերթեր՝
Թիթեռնիկն էր ճախրում թեթև,
Թռչում էին մեղու, բզեզ,
Ժպտում էին ծաղիկ ու սեզ,
Ուլերն էին ժիր թռչկոտում,
Գառներն էին զվարթ մայում...
Ամռան օր էր, ամռան կրակ,
Շոգ էր անգամ ծառերի տակ,
Չկար, չկար ոչ մի ստվեր,
Որ քուչիկը հովին նստեր:
Իսկ մի ճուտիկ կտցով զարկում,
Հաստ կեղևն էր ձվի ծակում,
Բաց էր անում դուռն աշխարհի
Երազներով հրաշալի:
Շուրջը մարգեր՝ շարքով ցանած,
Շուրջը գույներ՝ կարմի՜ր, կանա՜չ...



digitised by A.R.A.R.@








# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄԵԾՆ ՈՒ ՄՈԾԱԿԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Աշխարհահռչակ ճանապարհորդ Մարկոս Կիրակոսին համախակի էին դպրոց հրավիրում, և նա սիրով երեխաներին պատմում էր իր տեսածի ու լսածի մասին:

Այսպես, մի անգամ, դասարանի քար լռության մեջ, փառաբանված ճանապարհորդը սկսեց.

— Ալեքսանդր Մակեդոնացու մասին մանրամասն չեմ խոսի, բոլորիդ հայտնի է, որ նա մակեդոնացի էր, Ֆիլիպոս արքայի որդին, Արիստոտել մեծ մտածողի սանը, և իր թագավորության օրոք ստեղծեց անծայրածիր մի համաշխարհային պետություն Դանուբից մինչև Գանգեսի ափերը: Դա մեր թվականությունից առաջ չորրորդ դարում էր: Մակեդոնացին անտիկ աշխարհի մեծագույն զորավարն էր ու պետական գործիչը: Չնայած իր կարճ կյանքին, նա ապրել է ընդամենը երեսուներեք տարի, կարողացել է անել այնքան շատ, որ հետագա դարերում ամեն մի մեծ ու պատիկ զորավար ու թագավոր աշխատում էր գեթ չնչին չափով նմանվել նրան:

Դա խրոխ մի կարմանալի մարդ էր: Նաև հմուտ բժիշկ էր ու բուժում էր իր մերձավորներին: Նաև մարզիկ էր, մրցում և հաղթում էր նշանավոր մարզիկներին, նաև գիտական մեծ հակում ուներ և արշավների ժամանակ ճանապարհին հանդիպած գիտության համար արժեք ունեցող ամեն ինչը հավաքում և ուղարկում էր իր մեծ ուսուցչին՝ Արիստոտել Ստագիրիկին: Սիրում էր Հոմերոսի «Իլիականը», որն իր արշավանքների ժամանակ մշտապես պահում էր բարձի տակ, և իր սխրագործությունները կատարելիս աշխատում էր նմանվել իր ամենասիրած հերոսին՝ Աքիլլեսին:

Նա անչափ գեղեցիկ մի տղամարդ էր նաև, և չցանկանալով իր հրաշագեղ դիմագծերը թաքցնել բեղ ու մորուքի մեջ՝ սափրվում էր, որն ընդունված չէր ոչ միայն Արևելքում, այլև Հունաստանում և Մակեդոնիայում: Նրա օրինակին սկսեցին հետևել նրա մերձավորները, և այս կենսաձևը, ինչպես հավաստում են մատենագիրները, այնուհետև տարածվեց ողջ Հունական, Հռոմեական, Պոնտական աշխարհում, ինչպես նաև մեզ մոտ՝ Հայաստանում: Նրանից՝ Ալեքսանդր Մակեդոնացուց է սկսվում առաջին, այսպես կոչված, ածիլված դարաշրջանը ողջ մարդկության պատմության մեջ: Միայն փիլիսոփաները՝ նորաձևության այդ հակառակորդները, շարունակում էին բեղ ու մորուք պահել:

Ինչ որ է, բեղ ու մորուքի վրա շատ կանգ չառնենք, որովհետև կարևորը ոչ թե Մակեդոնացու չեղած բեղ ու մորուքն է, այլ նրա կարմանալի հանճարը:

Նա իր հսկայական պետության մեջ հիմնադրել է շուրջ յոթանասուն քաղաք՝ Ալեքսանդրիա անունով: Իր միապետության մեջ հաստատել էր հավասարություն բոլոր նվաճված ժողովուրդների համար, նրա պետության մեջ քաղաքացին իրեն պարտավոր էր համարել լինելու ոչ թե, ասենք, աթենացի, կորնթացի կամ եգիպտացի, այլ՝ աշխարհաքաղաքացի: «Բոլոր առաքինի մարդկանց,— հրամայել էր նա,— համարեք ձեր ազգականը, իսկ բոլոր վատահոգի մարդկանց համարեք օտարական կամ բարբարոս, եթե այդ մարդն անգամ ձեր հարազատ եղբայրը լինի»:

Ալեքսանդրի ողջ երթը Մակեդոնիայից մինչև Հնդկաստան փառավոր մի հաղթարշավ էր, սակայն հենց այստեղ՝ Հնդկաստանի Փենջաբի շրջանում նա առաջին անգամ հանդիպում է լուրջ դիմադրության: Հնդիկները նրա դեմ դուրս էին բերել երկու հարյուր մարտական փիղ, իսկ Ալեքսանդրի պինվորները սովոր չէին նման թշնամու դեմ մաքառելու: Սակայն նրանք Ալեքսանդրի զինվորներն էին, իհարկե, այս ճակատամարտը ևս շահեցին, չնայած՝ մեծ դժվարությամբ:

Վերադառնալով իր վիթխարի տերության մայրաքաղաք Բաբելոնը, Ալեքսանդր Մակեդոնացին սկսեց նախապատրաստել Հնդկաստանը նվաճելու մի նոր արշավանք: Եվ, ինչ խոսք, նա կնվաճեր ոչ միայն Հնդկաստանը, այլև Չինաստանը, և հայտնի չէ, թե բաց ծով հասնելով՝ ինչ պիտի աներ այդ ահավոր ու երջանիկ նվաճողը, եթե մերձբաբելոնյան ճահճուտում այդ ժամանակ ձվից դուրս չգար մի մոծակ:

Մակեդոնացու մասին արդեն պատմվեց բավականաչափ, այժմ մի քանի խոսք այդ նշանավոր մոծակի մասին, որը ձվից դուրս էր եկել մեր թվարկությունից առաջ՝ 323 թվականին: Նրան վիճակված էր պատմության մեջ մի վիթխարի դեր. այդ մոծակն էր, որ կանգնեցրեց աշխարհակալ մեծ նվաճող Ալեքսանդր Մակեդոնացուն, որին, թվում էր, թե աշխարհում ոչինչ ընդունակ չէր կանգնեցնելու:

Եթե Մակեդոնացու կենքը, որով նա կատարում էր իր անլսելի սխրանքները, իր հյոր, լավ վարժեց

digitised by A.R.A.R.@



ված բանակն էր, ապա այս մոծակի միակ կենքը, որով նա եկավ ու հաղթեց անպարտելի զորավարին, իր կնճիթն էր միայն:

Ալեքսանդր Մակեդոնացին ապրում էր արքայական շքեղ պալատում, իսկ սույն մոծակը, բնականաբար, ապրում էր մոտակա ճահճուտում, որը, նրա համար, հասկանալի է, պալատից էլ շքեղ էր:

Ամեն առավոտ արթնանալով, Մակեդոնացին անցնում էր իր պետական գործերին. մեծ մասամբ զբաղված էր լինում մոտակա արշավանքի հոգսերով, ստուգում էր զինվորների մարզական կարգը, փղերի դեմ մաքառելու նոր տեսակի զենքերի ընտրություն էր անում, ամեն օր հեռուներից ժամանող նորանոր զորքերի հրամանատարներին էր ընդունում և լսում նրանց զեկույցները: Նույն ժամանակ մոծակը գիշեր ու ցերեկ չուներ, թռչում էր դեսուդեն ու ամենուր ուտելիք էր որոնում:

Պատմական, իրավի պատմական այդ օրը, պատմական այդ մոծակը սովորականի պես թռչում էր և օդի մեջ հապիվ որսալի բույրերով և տաք մարմիններից ճառագող ջերկարճալիք ալիքներով որոշում, թե որտեղ կա մարդ կամ որևէ անասուն: Քաղաքին մերձակա զորանոցներն ու ախոռներն առանձնապես գրավիչ բույր ունեին. մոծակները մեծ մասամբ ճահիճներից ելնելով՝ այդ կողմն էին թռչում:

Սույն պատմական մոծակը, ճահճուտից հանելով զորանոց՝ իջավ առաջին պատահած զինվորի ականջին:

Զինվորի ձեռքի շարժումից մոծակը կրկին օդ բարձրացավ և այստեղ փչեց պատմական, իրավի պատմական մի քամի, որը մոծակին շեղեց իր ուղուց և նա, ինչպես կռահում եք, պատահաբար գնաց արքայի կողմը: Բայց մինչև նրան հասնելը՝ հանդիպեց մի ձիու, որը զորավարներից մեկի թիկնապահի ձին էր, կապած պարսպացցից: Մոծակը շատ էր քաղցած, իջավ ձիու զավակին և լավ տեղավորվելով և հոտառությամբ ու ջերմությամբ որոնելով արյան բարակ մազանոթի տեղը՝ կնճիթը խրեց և սկսեց ծծել: Թերևս նա կշտանար ու գնար իր բանին, բայց այստեղ թիկնապահի ձին պոչը շարժեց և այդ պոչ շարժելը իրավի պատմական պոչ շարժել էր, որովհետև, ինչպես կռահում եք, այս ամենը նպաստեց, որ սույն մոծակը խայթի Մակեդոնացուն կ նրան վաղակի մահացու հիվանդությամբ՝ դողէրոցքով:

Այսպես, ուրեմն, թիկնապահի ձիու պոչի պատմական թափահարումից հետո՝ մեր ծանոթ մոծակը կրկին օդ ելավ ու ևս պատմական մի քամու շնորհիվ հասավ արքայի նստավայրը և իջավ զորավար Անտիոքոսի քթին: Սրա քթին ևս ստիպված պետք է պատմական դեր տանք, որովհետև նրա քթից մոծակը չկարողացավ օգտվել, տերը նրան քշեց անփութորեն, առանց հասկանալու, որ այդ մի ձեռքի շարժումով ինքն ինչ արավ:

Ո՞վ գիտի ինչեր էր սպասվում Մակեդոնացու նոր արշավանքից, աշխարհն արդյո՞ք այս տեսքը պիտի ունենար, եթե մեր ծանոթ մոծակը չիջներ սենեկապետի ծառա, հունացած պարսիկ Գոգոտեոսի ծոծրակին: Այո՛, այս ծոծրակին նույնպես պետք է պատմական նշանակություն վերագրել: Այս պատմական ծոծրակը, եթե հանգիստ մնար և մոծակը իր քաղցը հագեցներ ծառայի անարժեք արյունով, այնուհետև չէր խայթի արքային: Կապրեր Մակեդոնացին, կնվաճեր Հնդկաստանն ու Չինաստանը, և, գուցե իրոք աշխարհն այս տեսքը չէր ունենա:

Օրում քիչ թրև գալուց հետո, մոծակը գնաց դեպի սենեկապետ Ներարքոսը, բայց այդ ժամանակ եթովպացի մի ստրուկ փռշտաց և մոծակը ուղղությունը փոխելով իջավ Մակեդոնացու պարանոցին ճիշտ այն պահին, երբ արքան ոգևորում էր Միդիաս զորավարին՝ իր ապագա արշավանքների հեռանկարով:

Ընդամենը մի վայրկյանում մոծակը կատարում է պատմական՝ իր սև գործը՝ վարակում է մեծ նվաճողին: Նա լցնում է իր փորիկը արքայական արյունով ու թռչում կրկին դեպի իր ճահիճները:

Մնացածը պարզ է: Մինչ հեռավոր երկրներում թագավորներն ու զորավարները ահուդողի մեջ պատրաստվում էին մեծ նվաճողի արշավանքին դիմադրել և չգիտեին, թե ինչպես պիտի կանգնեցնեն նրան, այստեղ, Բաբելոնում ընդամենը մի փոքրիկ մոծակ կանգնեցնում է նրա արշավանքը. հիվանդանալով որոշ ժամանակ անց Ալեքսանդր Մակեդոնացին վախճանվում է:

Հետագայում, ինչպես գիտեք, նրա վիթխարի տերությունը տրոհվում է մի քանի ինքնուրույն պետությունների և այլն: Բայց դա չէ կարևորը:

Մակեդոնացին չի մոռացվել ու երբեք էլ չի մոռացվելու: Հայտնի չէ, թե նա ինչեր էր անելու, եթե չլիներ անժամանակ մահը, որի պատճառն էր այն մոծակը, որը ներկայացվեց այստեղ:

Ո՞րն է, այնուամենայնիվ, այստեղ ամենակարևորը՝ Մակեդոնացու համա՞րն արդյոք, հունացած պարսիկի ձեռքի շարժո՞ւմը, թիկնապահի ձիու պոչի թափահարո՞ւմը, թե՞ եթովպացի ստրուկի փռշտոցը... դժվար է ասել, բայց եթե որևէ մեկը պնդի, թե ձիու պոչի թափահարումով կամ եթովպացի ստրուկի փռշտոցի շնորհիվ է, որ աշխարհը այժմ այս դեմքն ունի, կարելի է չվիճել, որովհետև մենք տեսանք, որ նա իրավացի է:

Մանավանդ՝ կարող է պատահել, որ մեր նախնին նույնպես Մակեդոնացու զորքի մեջ էր և նա կարող էր զոհվել հեռավոր Հնդկաստանում, եթե արշավանքը չխափանվեր: Այդ դեպքում, պարզ է, մենք ևս այսօր չէինք լինի: Ուրեմն, հնարավոր է, որ մենք այսօր կանք՝ շնորհիվ թիկնապահի ձիու պոչի պատմական թափահարման կամ եթովպացի ստրուկի պատմական փռշտոցի:

ՆԿ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ







digitised by A.R.A.R.@



Երևանի Հարավային դարպաս



Ֆրագմենտ «Արարատ» կոմբինատի մառանի արևմտյան ճակատից



# ՌԱՖԱՅԵԼ Ի

Եթե դուք Երևան մտնեք հյուսիսային կողմից, ձեզ կդիմավորի մի ուղենիշ-կոթող՝ առասպելական Վահագն Վիշապաքաղի պատկերով:

Երբ հարավից՝ Փարաքարի օդակայանի կողմից մտնեք Երևան, ձեզ մայրաքաղաք կհրավիրի մեկ ուրիշ ուղենիշ-կոթող՝ վեհատեսիլ արծվի կերպարանքով:

Էջմիածնի խճուղուց դեպի Զվարթնոցի ավերակները թեքվելիս՝ անպայման կնկատեք մի այլ գեղեցիկ ուղենիշ՝ դարձյալ արծվի քանդակով:

Գառնի-Գեղարդ ճանապարհին կուզենաք անպայման կանգ առնել՝ Չարենցի կամարի միջով Արարատը դիտելու համար. բիբլիական լեռը, երևի, ոչ մի տեղից այնքան վեհ ու տպավորիչ չի երևում, որքան այս սքանչելի կամարից:

Գեղարդ չհասած՝ ձեզ դիմավորում է առյուծազարդ մի կոթող, և նախորդների նման նախապատրաստում է հանդիպելու մի մեծ երևույթի:

Այս բոլորի հեղինակը մեծատաղանդ ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանն է (1908—1973): Այս բոլորը, ինչպես նմանօրինակ շատ կառույցներ՝ մեծաթիվ աղբյուր-հուշարձաններ Հայաստանի բոլոր վայրերում, ճարտարապետական փոքր ձևերի մարգարիտներ են: Ականավոր ճարտարապետը մի առանձին սեր ուներ այդ ձևերի նկատմամբ, որոնցով նա զարդարեց մեր հայրենի երկիրը: Իր բովանդակ կյանքում նա չունեցավ ավելի մեծ ու նվիրական ձգտում, քան հայրենիքն ավելի գեղեցիկ տեսնելը: Եվ այդ ձգտումը իրականացնելու համար ոչ մի ճարտարապետ մեծ Թամանյանից հետո, այնքան գործ չի տեսել, որքան Իսրայելյանը:

Իսրայելյանը ճարտարապետական նաև մեծ ձևերի, մեծ կառույցների, նույնիսկ ամբողջական անսամբլների վարպետ էր՝ «Սարդարապատի ճակատամարտը» վիթխարի համակառույցի հեղինակն է նա: Այդ գրոսայգի-

## ՌԱՖԱՅԵԼ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

# ՄԱՅՐԱՔԱՂ

Հին Երևանի Աստաֆյան (այժմ Աբովյան) փողոցն իր ցածրադիր մասում պսակվում էր մի փոքրիկ պբոսայգով, ուր կային շատ շքեղ... կոշիկ մաքրողների տաղավարներ, պաղպաղակի ու սիֆոնի բաց կրպակներ: Այդ պբոսայգուն չհասած, Աստաֆյանի վերջում, կային մի շարք այլ կրպակներ և մի մեծ սև շենք, որ գիմնազիայի համար է օգտագործվել: Ահա այդ շենքի և պբոսայգու միջև եղած տարածությունն էլ դարձավ Սովետական Հայաստանի մայրաքաղաքի ապագա կենտրոնը: Անցան տարիներ, վերացան դուքաններն ու դուքանդարները, մաքրվեցին մութ որջերը և հետպհետե, քայլ առ քայլ բացվեց մի մեծ հրապարակ:

Գիտեմ, որ մեր մայրաքաղաքի մասին շատ է ասվել, բայց ինչքան էլ որ պատմենք, էլի քիչ է, ասելու շատ բան կա:

Երևանը եզակի երևույթ է ժամանակակից քաղաքաշինական իմաստով, արտակարգ երևույթ՝ իր ճարտարապետական բնույթով: Ամբողջ քաղաքը կառուցված է մի ոգով, մի ոճով, թեև շատ բազմազան է իր ճարտարապետական մշակման ձևերի մեջ, ազգային ճարտարապետական միանգամայն որոշակի դեմքով, արվեստի ինքնատիպությամբ: Դրա համար մենք պարտական ենք մեծ վարպետ, քարի արվեստի կախարդ, սովետահայ ճարտարապետության հայր Ալեքսանդր Թամանյանին, որի գործերը եղան այն հիմնաքարերը և ուղենիշները, որ այնքան լայն տարածվեցին նոր սերնդի սրտերում և նրանց ճարտար գործերում, հենց որ Հայաստանում սովետական կարգեր հաստատվեցին, ազատագրված հայ ժողովուրդը հնարավորություն ստացավ լծվելու ստեղծագործական աշխատանքի:

Թամանյանի մեծ հայրենասիրական մտքի ծնունդն է Լենինի հրապարակը: Կառավարական



digitised by A.R.A.R.@

# ՍՐԱՅԵԼՅԱՆ





«Մայր Հայաստան»

հուշարձանն իր փառահեղ զանգաշտարակով, հուշապատերով, սեղանատնով ու թանգարանով, ճարտարապետական արվեստի մի գլուխգործոց է:

Հաղթանակի կամուրջով Երևան մտնելիս դուք տեսնում եք մի ծավալուն շինություն՝ զանգվածային պատերի վրա վիթխարի կարասներ քանդակված: Սա ևս մեր մայրաքաղաքի և մեր նորագույն ճարտարապետության զարդերից է:

Վերջապես, ամեն օր ձեր աչքի առաջ է Հաղթանակի մոնումենտը, որի հեղինակը նույնպես Սովետական Միության ժողովրդական ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանն է (քանդակի հեղինակը՝ Արա Հարությունյանը):

Մեր մայրաքաղաքում և մայրաքաղաքից դուրս, հանրապետության որ անկյունն էլ գնաք, դուք կհանդիպեք ճարտարապետ Իսրայելյանի անունը հավերժացնող չքնաղ կոթողների:

Ռաֆայել Իսրայելյանի սիրտը տրոփում էր մի անսահման սիրով դեպի հայրենիքի զավակները, հատկապես՝ փոքրիկները: Նա հրճվում էր փոքրերի լավ գործերով և ցավում էր սաստիկ, երբ տեսնում էր, թե նրանցից ոմանք ինչպես են փչացնում ծառ ու ծաղիկը, աղտոտում բնությունը, անմիտ գրություններով փչացնում պատմական հուշարձանները, ինչպես են տգեղ, անշնորհք խոսվածքով աղավաղում մեր հնամյա, պաշտելի մայրենի լեզուն:

Իսրայելյանը նաև գրում էր ակնարկներ ու հոդվածներ, սիրում էր իր մտքերն ու հուզումները հանձնել թղթին, բաժանել բոլորի հետ: Ձեզ է ներկայացվում նրա անտիպ գրվածքներից մի քանիսը:

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ



Գորիս—Ջերմուկ ուղեցույց-կոթողի էսքիզ. 1963 թ.

# ԱՔԻ ՍԻՐՏԸ

տունը դարձավ ողջ հրապարակի կառուցապատման թելադրողը և մեր ճարտարապետության անցած ուղու գլուխգործոցը, որը իր էությամբ, գաղափարական նշանակությամբ, քարի լեզվով արտահայտեց հայ ժողովրդի բնավորության հատկանիշները, հոգեկան հարստությունը:

Լենինի հրապարակը Հայաստանի մի յուրովի կենտրոնն է: Այստեղ են տեղավորված կարևորագույն հիմնարկներից մի քանիսը՝ կառավարական տան գլխավորությամբ: Ու նաև փոստի գլխավոր վարչությունը, քաղաքի խոշորագույն հյուրանոցը և վերջապես Հայաստանի պետական պատմական թանգարանն ու պատկերասրահը, ուր ամբարված են հայ ժողովրդի հոգևոր ու նյութական մշակույթի հարստությունները:

Հրապարակի կառույցները դիտվում են որպես մի ամբողջություն՝ ճարտարապետական մշակմամբ, ծավալներով ու ոճով, ծավալների ընդհանրությամբ, և ընկալվում են որպես ճարտարապետական ներդաշնակ մի կոթող, որ արտահայտում է համաժողովրդական միասնության ուժը:

Այդ ես զգում, երբ մտնում ես հրապարակ, տեսնում նրա չորս կողմը բոլորած քարակերտ շենքերը և դեպի վեր խոյացող Լենինի բարձրադիր արձանը:

Ազատության երգի ու կոչի նման են հնչում այդ լայն բացված կամարները, որոնք լարված ու ձիգ ձևերով տանում են հայացքը դեպի վեր, դեպի երկնքի կապույտը, առաջ բերելով պայծառ ու խորը շնչելու ցանկություն:

Հրապարակի անսամբլի մեջ արտահայտվել է հայ ճարտարապետության պարզությունը: Արվեստի միջոցներով միտքը պարզ արտահայտելը ամենադժվար խնդիրն է: Ալեքսանդր Թամանյանը մեծ վարպետությամբ և իրեն հատուկ մեծ ընդհանրացումներով է հորինել ողջ հրապարակի կերպարը:



digitised by A.R.A.R.@

*Այսպիսի պարզությամբ է վեր բարձրացել նաև կառավարական տան աշտարակը, որ կարծես ամբողջ հրապարակի տրամադրությունն է արտահայտում՝ բարձր, ոգևորիչ, կենսուրախ:*

*Մեծ տպավորություն է թողնում նախկին ժողտընտխորհի շենքի ցածից երևացող պատկերը. Լենինի արձանը վեր խոյացած Մեծ Մասիսի դեմ հանդիման ու նրա մեծությանը ձուլված՝ դառնում է մի ամբողջություն:*

*Լենինի հրապարակին դեռ չհասած, նրա մատույցներն արդեն հետաքրքրություն են առաջ բերում, հուշելով, որ ուր որ է դեմներս բացվելու է ճարտարապետական գրավիչ մի պատկեր: Աբովյան ու Նալբանդյան փողոցների դեռ շատ հեռվից երևում են այն աշտարակները, որ բարձրանում են հրապարակի վրա, ազդարարելով, որ դիտողին սպասում է տեսարժան մի վայր:*

*Հոկտեմբերյան պողոտայի խորքից երևում է կառավարական տան անկյունային ծավալը՝ իր մեծ կամարակապ խորշով, որը ևս նախապատրաստում է մեծ ճարտարապետական պատկերի ընկալմանը: Շահումյան փողոցի վերսայգին, ձուլվելով հրապարակին, նույնպես հանդիսանում է նրա նախաակիպը, կգացնել տալիս հրապարակի մոտալա առկայությունը: Եվ, վերջապես, Ամիրյան փողոցն իր հերթին բաց է անում մի տեսարան, որի վերջում երևում են կառավարական տան մի հատվածը. սա ևս ձրապուրում է դիտողին:*

*Նույնպիսի դեր կխաղա և Հյուսիսային պողոտան, որը կապ կստեղծի օպերայի և բալետի թատրոնի և հրապարակի միջև՝ նախքան հրապարակ մտնելը, հանդիպեցնելով պատմության թանգարանի շենքին, որպես նախամուտք դեպի հրապարակ:*

*Եվ Հյուսիսային պողոտայի շնորհիվ է՛լ ավելի գեղեցիկ, է՛լ ավելի հրապուրիչ կդառնա մայրաքաղաքի սիրտը, Թամանյանի հանճարի գլուխգործոցը, որը նաև Երևանի ճարտարապետական գլուխգործոցն է:*

*Մենք ունեցանք այս ամենը շնորհիվ Հոկտեմբերյան մեծ հեղափոխության և ռուս ժողովրդի մեկ օգնության հասած փրկարար ձեռքի:*



# ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹԱՄԱՆՅԱՆԸ ԵՎ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

Անցնում էի այն պուրակով, ուր քար էր դրված և վրան գրված, որ այստեղ կանգնեցվելու է Թամանյանի արձանը: Քարին մոտենալիս ակամա հանեցի գլխարկս: Ինչքա՜ն ենք պարտական այս մեծ մարդուն. նա ցույց տվեց, թե ինչպես պետք է մեր դարեր լռած քարերը նորից խոսեն, խոսեն հայերեն: Նրա հանճարով ժողովուրդը կանգնեցրեց հոյակապ շենքեր, կառավարական տուն, օպերայի հսկա թատրոնը, հիմք դրեց մեր սքանչելի Երևանին:

Մեր Երևանին, համահայոց մայրաքաղաքին:

Այդ հուշաքարի շուրջը վազվզում էին մոտակա մանկապարտեզից եկած երեխաները: Նրանցից մեկը գայթակղեցուցիչ հեռավորության վրա էր, բռնեցի և շոյեցի շեկ գլուխը: Երեխան չտեսավ ինձ և երբ անհանգստություն վզաց, գլուխը շուռ տվեց դեպի ինձ. փոքրիկ, սիրունիկ աղջիկը կարմացած աչիկներով նայեց, մի քիչ վախեցած և ավելի պայրացած, որ խաղի թափը կոտրեցի, բայց երեսիս ժպիտը տեսնելով, ինքն էլ ժպտաց: Դիմեցի նրան շարքային, շատ սովորական հարցով.

— Ի՞նչ է անունդ, սիրո՛ւն աղջիկ:

— Նոյե՛մ,— անսպասելի համարձակ ասաց աղջիկը, ցանկանալով շուտ ազատվել ինձնից: Նրա հետ խաղացողները, տեսնելով ընկերուհուն ինձ մոտ, իրենք էլ մոտեցան:

— Իսկ քո՞ անունն ինչ է,— հարցրի երկրորդին:

— Սաթենիկ,— ասաց նա, հեզ աչիկները իջեցնելով:

— Իսկ իմ անունը Վարսենիկ է,— մեջ մտավ երրորդը, չսպասելով, որ հարցնեմ, երևի շատ էր հավանում իր անվանը, որ իիրավի գեղեցիկ է, բայց չգիտես ինչու մոռացվում է նման շատ անունների պես:

— Շատ լավն եք, մանավանդ որ այդպիսի սիրուն անուններ ունեք, ամեն մեկիդ ձեր անունը շատ է սազում,— էլ չգիտեի ինչ ասեի, այնքան էի զարմացած, որ երեքն էլ հայկական սքանչելի անուններ ունեն: Տեղումս կանգնած նայում էի նրանց ետևից: Քիչ հեռու երեխաները հավաքվեցին, քչփչալով նայում էին իմ կողմը, ես ձեռքով արի, նրանք էլ պատասխանեցին, կանգնած Թամանյանին նվիրված հուշաքարի մոտ, չիմանալով, թե ինչ քար է այն, ինչու է կանգնեցված, չիմանալով, որ այդ պուրակը այդ մեծ մարդու մաքառումների արդյունքներից էր, չիմանալով, որ ես էլ նրանց պապացն եմ փորձում պատկերել և ինքնաբերաբար կապում են Թամանյանի հետ. սրանք օրերից մի օր լինելու են Թամանյանի հետնորդներից և գուցե գործի շարունակողներից:



digitised by A.R.A.R.@




Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԻՍՐԱՅԵԼՅԱՆԻ

Անցած օրը, երկու երիտասարդ բանվոր տոնական լուսավորության լամպերի շղթաները ծառերի ճյուղերից իջեցնում էին: Նրանցից մեկը, երկար փայտը ձեռքին ապատում էր խճճված լարը, իսկ մյուսը հավաքում էր իջեցրածը: Լարը քաշողը չհամբերեց, շտապեց, այնքան ուժեղ քաշեց լարը, որ ծառից մի մեծ ճյուղ կոտրեց: Ճյուղը վիրավոր թռչունի թևի նման անզգա կախ ընկավ: Անցնող մարդիկ վայրացան, բայց ի՞նչ, ճյուղն արդեն կոտրված էր: Ես չհամբերեցի, խիստ կշտամբեցի, հիշեցնելով, որ անխիղճ և անփույթ են ոչ միայն դեպի կանաչը, այլև լամպերը, որոնցից շատերը փշրվել են, նույն անհոգի վերաբերմունքի հետևանքով: Նրանցից մեկը ինձ հանդիմանեց, ասելով, որ դա իմ գործը չէ և որ լամպերի համար ինքն է պատասխանատու, բնավ չհասկանալով, որ լամպերը նաև իմն են ու այս անցորդներինը, բոլորինն են: Լավ էր, վեճը շուտ վերջացավ և անպատիվ խոսքեր չլսեցի:

Անցնում եմ ֆիլհարմոնիայի շենքի կողքով: Բաց պատուհանից հոսում է ջոյող երգը: Առջևիցս երեք երիտասարդներ բարձրաձայն աղաղակներով գնում են, մոռացած շրջապատը և մեկ էլ անթույլատրելի անկարգ խոսքեր են ասում: Փորձում եմ կարգի հրավիրել, ինձ անպատվում են: Գեղեցիկ երեկոն դառնում է դառը, և քաղաքը ինչ-որ չափով ապականվում է: Ապականում են այդ երկու-երեք տղաները:

Աղջիկներ, որ մետաքսագործներ են կամ չափազանց նուրբ աշխատանք են կատարում ժամացույցի գործարանում, որտեղ, հիրավի, բարակ աղջկական մատները կարող են միայն աշխատել և... հիասթափություն. այդ նույն աղջիկները, մոմի նման մատներով, այնպիսի աղավաղված հայերենով են խոսում, որ մոռանում ես և մեր ճարտարապետությունը, և նրա ազնիվ ոճը, տխրում և ասում ես ինքդ քեզ. ա՜խ, ինչո՞ւ են այս աղջիկները իրենց գեղեցկությունը աղավաղում նման լեզվով, որ բնավ չի բռնում ո՛չ իրենց արտաքինին, ո՛չ մեր քաղաքին, մեր այսօրվա կենցաղին, երբեմն ինչ անճաշակ զգեստ են հագնում և ինչ այլանդակության է հասնում ոմանց հարդարանքը:

Այդպիսիները գուցե այնքան էլ շատ չեն, բայց մաքուր փողոցը կեղտոտում են անշնորհք դռնապանի չհավաքած աղբակույտի նման, քանդված մայթի, ջարդված դռան նման, «մանրունքներ», որոնք շենքի ու փողոցի հմայքն են փչացնում, քաղաքի վրա ստվեր գցում, գեղեցիկ շենքը սևացնում:

Մի բան էլ ասեմ, քանի խոսքն աղջիկներին հասավ: Մեր երիտասարդների մեջ հաճախ եմ նկատել անթույլատրելի, անհարգալի վերաբերմունք դեպի աղջիկները, անգամ դեպի իրենց հավանած ընկերուհիները:

Շարունակել չարժե, գիտեմ, որ շատերը չեն սիրում, երբ գլխներին քարոզ են կարդում: Բայց սիրտս շատ է ցավում: Չէ՞ որ սիրել, հպարտանալ մեր մայրաքաղաքով, դեռ քիչ է, շատ քիչ: Շատ-շատերին հարկավոր է նրա լիարժեք քաղաքացին լինելուն, երևանցու անունը կրելուն արժանի դառնալ: Երևի պետք լինի մտածել Երևանին նվիրված որևէ կրծքանշան ստեղծելու մասին, որ բոլորը կրեն և իրենց զգաստ ու վայելուչ պահեն: Սիրելուց բացի պետք է և հարգենք մեր քաղաքը, հարգենք մեր վարքով, նիստուկացով, ուր էլ որ լինենք, քաղաքի ամեն մի անկյունը, ամեն մի տաշած քարը, ծլած ծաղիկը համարենք մերը, մեր մասնիկը, մեր հարստությունը:

Պետք է ամեն մի երևանցի բարձր պահի իր քաղաքի պատիվը և միայն այդ դեպքում Երևանը կդառնա այն, ինչ երազում ենք:



digitised by A.R.A.R.@

*Թևավոր խոսքեր.*

## ԻՆՁՆԻՑ ՀԵՏՈ՝ ՋՐՀԵՂԵՂ

Ավանդությունն այս խոսքը վերագրում է երբեմն ֆրանսիական Լյուդովիկոս XV արքային, որը մի անգամ ասել է, թե նույս ունի Ֆրանսիայում պահպանել միապետությունը, իսկ «ինձնից հետո՝ ջրհեղեղ», երբեմն էլ վերագրում է նրա մերձավոր մարկիզուհի Պոմպադուրին կամ դեկոմուհի Դյուբարիին:



Կարևոր չէ, թե նրանցից ով է ասել այս անվայել խոսքը, ամեն դեպքում սա պարզ կերպով ցույց է տալիս Ֆրանսիայի բռնապետների եսամոլությունը: Այժմ մենք այսպես ենք ասում, երբ կամենում ենք արտահայտել մեր վրդովմունքը անհեռատես, եսասեր, անհաշվենկատ քաղաքականության դեմ:

## ԱՆՊԱՐՏԵԼԻ ԱՐՄԱԴԱ

Արտակարգ կերպով բազմազան են այն աղբյուրները, որտեղից մեր լեզվի մեջ են թափանցում զանազան պատկերավոր արտահայտությունններ: «Անհաղթելի արմադա» խոսքն, օրինակ, մեզ է հասել XVI դարի Իսպանիայի պատմությունից: Սարսափելի մոլեռանդ և բռնապետ, երկրիս վրա ամենից զարհուրելի տիրակալներից մեկը, Իսպանիայի Ֆիլիպ II արքան, 1588 թվականին Անգլիայի դեմ է ուղարկում



այն ժամանակների համար հսկայական մի նավատորմ, բաղկացած 160 նավից, նրան տալով «Անհաղթելի արմադա», այսինքն «նավատորմ» անունը:

Ֆիլիպի բախտը չբերեց. հողմը և անգլիական նավաստիները ոչնչացրին արմադան, և դրանով վերջացավ Իսպանիայի ծովային հզորությունը:

Այդ ժամանակից ի վեր «անհաղթելի արմադա» հեգնական արտահայտությունը նշանակում է արտաքնապես ահեղ, բայց իրականում չնչին մի ուժ, հսկայական, բայց վատ կազմակերպված հարձակում:

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

## ՀԵՌԱՎՈՐ ԱՆՑՅԱԼԸ ԴԱՌՆՈՒՄ Է ՄՈՏԻԿ




Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի առթիվ Երևանի № 50 երկարօրյա ուսուցման միջնակարգ դպրոցի յուրաքանչյուր դասարան ուսումնասիրում է սովետական իշխանության երկու տարվա տարեգրությունը: Դպրոցականները ուսուցիչների անմիջական ղեկավարությամբ տեղեկություններ և փաստեր են հավաքում մեր երկրի մասին, ի մի բերում և գրանցում տետրերում: Այս աշխատանքի շնորհիվ հեռավոր թվացող անցյալը մոտենում է, դպրոցականները կարծես իրենք էլ են դառնում պատմական դեպքերի մաս-

## «ՄԻՆՉԵՎ ԱՌԱՋ,

*1976 թվականի սկզբին 5-րդ Ա դասարանի ջոկատը որոշեց պայքարել, որպեսզի ջոկատին շնորհվի քաջարի մարտիկ, հեղափոխական, գրող Նիկոլայ Ալեքսեևիչ Օստրովսկու անունը, որի կյանքի օրինակով կոմերիտականների ու պիոներների մի քանի սերունդ է դաստիարակվել:*

*Մեր առաջին նշանաբանն էր՝ սովորել առանց «երկուսների» և օրինակելի վարք ունենալ: Որոշեցինք նաև նյութեր հավաքել՝ դասարանում Ն. Օստրովսկու թանգարան ստեղծելու համար: Նյութեր էինք հավաքում ոչ միայն Ն. Օստրովսկու կյանքի ու ստեղծագործության, այլև նրանց մասին, ովքեր դաստիարակել էին նրան, և նրանց մասին, ովքեր դաստիարակվել են Օստրովսկու օրինակով:*

*Մոսկվայի Ն. Օստրովսկու անվան թանգարանից մենք իմացանք գրողի և նրա ժամանակակիցների անունը կրող դպրոցների, դրուժինաների և ջոկատների հասցեները, նամակներ գրեցինք այդ հասցեներով:*

*Մեկը մյուսի ետևից պատերին փակցվեցին «Բոցերում մեծացանք մենք», «Ինչպես է կոփվում պողպատը», «Կորչագինական» և այլ խորագրերով ցուցափեղկեր: Ջոկատի անդամները հեղափոխական*



digitised by A.R.A.R.@

նակից. գրոհում են Ձմեռային պալատը, հաղթահարում կոլեկտիվացման դժվարությունները, մասնակցում առաջին էլեկտրակայանների կառուցմանը, պայքարում համատարած գրագիտության համար, հաղթական դրոշը բարձրացնում Ռայխստագի վրա, կառուցում Բայկալ-Ամուրյան մայրուղին... Եվ ամենակարևորը՝ սովորում են ինքնուրույն աշխատել, ընտրություն կատարել, տարբերել կարևորը, որոշիչը:

Վերջին շրջանում դպրոցը նշանակալի հաջողությունների է հասել, արժանացել է ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի երրորդ մրցանակին՝ բրոնզե մեդալի և իրավացիորեն համարվում է հանրապետության օրինակելի դպրոցներից մեկը:

Դպրոցում ամեն օր անց է կացվում պիոներական ժամ, քննարկվում են «Գնում ենք Լենինի ճանապարհով, Հոկտեմբերի՝ ճանապարհով» երթի արդյունքները: Դպրոցականները պիոներիայի պատմությանը նվիրված ցեկուցումներ են կարդում, կազմակերպում են հանդիպումներ արտադրության առաջավորների, գիտության և արվեստի աշխատողների հետ:

«Գեղեցիկի աշխարհում» երթուղուն մասնակցող դպրոցականները «Ծաղկի տոն» էին հայտարարել, ուր ամենագեղեցիկը ճանաչվեցին 3-րդ Բ դասարանի աճեցրած ծաղիկները: Արամ Խաչատրյանի անվան ջոկատը մեծ կոմպոզիտորին նվիրված ցերեկույթ անցկացրեց: Երեխաները ծանոթացան կոմպոզիտորի կյանքին, լսեցին նրա ստեղծագործությունները իրենց ընկերների կատարմամբ: Յուրաքանչյուր միջոցառում նոր մտքեր է ծնում, յուրաքանչյուր միտք՝ նորանոր գործերի է մղում: 6-րդ Ա դասարանը ընկերասիրության մասին բանավեճ կազմակերպեց, 5-րդ Ա-ն՝ «Ինչ եմ մտածում իմ և ընկերոջս մասին»: «Տուր ձեռքդ, բարեկամ» նշանաբանով գործող ինտերնացիոնալ բարեկամության ակումբի անդամները նամակագրական կապ են հաստատել միութենական հանրապետությունների բոլոր № 50 դպրոցների հետ:

Միսաք Մանուշյանի անվան դրուժինայի ակտիվ մասնակցությունը «Ուժեղներ, համարձակներ, ճարպիկներ» երթուղուն, նպաստեց, որ Գևորգ Ռուբինյանը դառնա հանրապետության պատանի բռնցքամարտիկների չեմպիոնը: Դպրոցում գործում են երգչախումբ, պարի, թատերական, շյուղագործության և այլ խմբակներ: Դպրոցականները այցելում են թանգարաններ և պատկերասրահներ, կոլեկտիվ կինոդիտումների են գնում: Երբ կարիք են ունենում միմյանց կարծիքը լսելու, հավաքվում են քննարկման: Այդպիսի քննարկումներից մեկի ժամանակ ծնվեց «Ինչ կանեի, եթե ամենակոր լինեի» թեմայով վեճի գաղափարը: Իսկապես, ինչե՞ր կարելի է անել... Այդ օրը երեխաները որքա՜ն երջանկացրին աշխարհը:

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՄԻԱՅՆ ԴԵՊԻ ՀԱՂԹԱՆԱԿ»

*թեմաներով շարադրություններ գրեցին:*

*Մայիսի 19-ին՝ պիոներիայի ծննդյան օրը հանդիսավոր տողանի ժամանակ ջոկատին շնորհվեց Ն. Օստրովսկու անունը: Հենց այդ օրը ստացվեց Ն. Օստրովսկու հավատարիմ ընկերուհու, կնոջ՝ Ռաիսա Պորֆիրևնա Օստրովսկայայի նամակը.*

*«Այժմ դուք օստրովսկիականներ եք,— գրել էր Ռաիսա Պորֆիրևնան:— Իսկ դա նշանակում է՝ միշտ և ամենուր առջևում լինել: Այսօր՝ ուսման ու դպրոցական գործերում, վաղը՝ ուր ձեզ կուղարկի հայրենիքը: Եվ թող Ն. Օստրովսկու կչանաբանը՝ «Մի՛շտ առաջ... միա՛յն դեպի հաղթանակ»— նաև ձեր նշանաբանը լինի:*

*Դասարանի միջին շարքի երկրորդ նստարանին գրված է. «Նիկոլայ Օստրովսկու նստարան»: Ջոկատի խորհուրդը իրավունք է տալիս այդ նստարանին նստել միայն լավագույն պիոներներին:*

*Հուլիսին «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» պիոներների համամիութենական հավաքի պատվիրակների թվում Արտեկ մեկնեց նաև մեր ջոկխորհրդի նախագահ Քնարիկ Անդրեասյանը: Բոլորն ուրախ էին, չէ՞ որ նրա մեկնելը ամբողջ ջոկատի աշխատանքի վկայությունն ու գնահատականն էր:*

*Ջոկատի անդամներից շատերը եղել են Սոչիում, Մոսկվայում՝ Ն. Օստրովսկու թանգարաններում, և այցելել նրա գերեզմանին: Հեղափոխական մարտիկի ծննդյան օրվա նախօրյակին դասարանում նոր ցուցապախտակներ փակցրին, թղթի թափոն ու մետաղի ջարդոն հավաքեցին ու հանձնեցին, որից ստացված գումարը փոխանցեցին Շեպետովկայում կառուցվող Ն. Օստրովսկու թանգարանի հաշվին:*

*Ջոկատը նախապատրաստվում է մասնակցելու Ն. Օստրովսկու ծննդյան 75-ամյակին նվիրված կորչագինականների հավաքին:*

*1977 թվականը ջոկատը դիմավորեց հարյուր տոկոս առաջադիմությամբ: Ուսման մեջ և պիոներական աշխատանքներում ձեռք բերած հաջողությունների համար ջոկատը պարգևատրվեց ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով: Կոմերիտմիության այդ բարձր պարգևը ջոկատը ընդունում է որպես ավանդ՝ հետագա առավել եռանդուն գործունեության: Ջոկատի յուրաքանչյուր անդամ այժմ լավ գիտի Ն. Օստրովսկու խոսքերը. «Եթե չես կարող դաստիարակել հարյուրների, դաստիարակիր գոնե հինգի, գոնե մեկին»:*

*Մ. ԱԼԵՔՅԱՆ*

*Երևանի № 132 դպրոցի 5-րդ Ա դաս. դաստիարակ*


Гос. Библиотека
Арм.ССР



digitised by A.R.A.R.@

# ՀՅՈՒՐԸՆԿԱԼԵԼ ԷՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ

Ճամբարը, որ տեղավորված է Կիրովականի Վանաձոր գեղատեսիլ կիրճում, շատ բազմամարդ է և հիշեցնում է քաղաք, ուր միայն երեխաներ են ապրում: Ճամբարում հանգստանում են ոչ միայն Հայաստանի, այլև աշխարհի տարբեր ծայրերից ժամանած ու փյուռքահայ, չեխոսլովակացի, բուլղար երեխաներ:

Սփյուռքահայ երեխաների հանգիստը մայր հայրենիքի պիոներական ճամբարներում վաղուց ավանդույթ է դարձել: Ժամանում են նրանք ԱՄՆ-ից, Ֆրանսիայից, Հորդանանից, Լիբանանից, Իրաքից, Եգիպտոսից և այլ երկրներից: Գրեթե բոլորը առաջին անգամ են լինում Հայաստանում: Լիբանանից եկած Հովհաննես Դանիելյանը երկրորդ անգամ էր հայրենիքում:

— Ծնողքս, եղբայրս ալ եկած են: Եկած ենք հոս հաստատվելու...

Մեկ տարի հետո այս տղային երբ հանդիպեմ Երևանի փողոցներում, նա տանտիրոջ վստահ արտահայտությունը դեմքին, ինձ հետ կզրուցի սահուն հայերենով:

Ֆրանսիայից եկած խմբի ղեկավարը տասնութամյա Արմեն Սարյանն էր: Նա ասաց, որ այստեղ մարդիկ շատ սրտաբաց են ու բարի: Շատ ուրախ է, որ միանգամից այսքան հայ է տեսնում, հայերեն խոսակցություն, հայկական երգեր է լսում...

— Կուզեմ հոս ապրիլ: Հոս շատ գեղեցիկ է, շա՜տ... ասում էր Ալեքսիս Մխչյանը, որ եկել էր Հորդանանից:

Եգիպտոսից եկած մի աղջիկ էր նստել դիմացս ու ակնապիշ նայում էր հատակին: Արդեն մի ամիս այստեղ էր, բայց ոչ մի կերպ չէր կարողանում դուրս գալ զարմացած վիճակից: Ալիս Քութնոյանը, իր ասելով, շատ այլ ձևով էր պատկերացնում Հայաստանը...

Հին ձևով, — ասում էր նա: Նա Հայաստանը պատկերացնում էր վանքերի և բերդերի մի երկիր, ուր ապրում են հին հայկական տարազներ հագած մարդիկ, իսկ պարզվում է, որ շատ ժամանակակից մի երկիր է սա, ունի գեղեցիկ մայրաքաղաք:





*Լուսանկարները՝*
*ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ*

ԱՄՆ-ից եկած խմբի ղեկավարն էր Ֆիլադելֆիայի հայ քույրերի վարժարանի մաթեմատիկայի ուսուցչուհի Արսինե Ռստիկյանը:

Հայրենիք մեկնելուց առաջ բոլոր երեխաները հայերեն ու անգլերեն շարադրություններ են գրել: Շարադրությունը միայն հայրենիքի մասին էր, ողջ խոստովանությունը հայրենիքի շուրջը, այն անհավատալի հեռու հայրենիքի, որը շուտով տեսնելու էինք:

Սիրիայից եկած Պետրոս Քեշիշօղլյանը սովորում է Կիլիկյան հայկական ճեմարանում, որը տասներկու դասարանյա է: Նա սիրում է բասկետբոլ և սեղանի թենիս խաղալ: Մասնակցում էր ճամբարում սովորած «Բերդ» պարին:

— Եթե հաջողի՝ Հայաստան ապրելու եմ, — հայտարարեց Իսրայելից եկած Սարո Նալչաջյանը: Նա քրոջ հետ էր եկել՝ Անուշի: Նրանց ծնողները հայրենիք կատարելագործվելու էին եկել սփյուռքահայ ուսուցիչների առաջին խմբի հետ: Սարոն տարված է հայ գրականությամբ: Նա ասում էր, որ Երուսաղեմի մատենադարանում կա հայ գրողների գործերի մի մեծ հավաքածու, ինքը լավ ծանոթ է Իսահակյանի ու Թումանյանի, Րաֆֆու ու Չարենցի երկերին: Շատ է կարդում և ուզում է բժիշկ դառնալ:

Էլիզաբեթ Ծերունյանը եկել էր ԱՄՆ-ի Ֆիլադելֆիա քաղաքից:

— Ես կուզեմ ամեն ամառ գալ հոս հանգստանալ: Որովհետև... շատ գեղեցիկ է Հայաստանը, աշխարհում քիչ երկրներ կան, որ այսքան գեղեցիկ լեռներ, հովիտներ, անտառներ ու դաշտեր ունենան:

Նրանք օրը օրին ավելի ու ավելի էին սիրում և կապվում հայրենի բնությանը, մայր ժողովրդին և այն ամենին, ինչն այնքան թանկ է բոլորիս համար:

*ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ*

digitised by A.R.A.R.@

**Տասներորդ հնգամյակի երկրորդ տարվա սկզբին մեծ հաղթանակ տարան Հայաստանի ատոմակայանի շինարարները։ Շահագործման հանձնվեց 405 հազար կիլովատտ հզորությամբ միջուկային սրտով առաջին էներգոբլոկը։ Այդ ատոմակայանի աշխատանքներին մասնակցած բոլոր շինարարներին, ինժեներներին ու տեխնիկներին ի սրտե ու ջերմորեն շնորհավորեց ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։**

**Ահա այդ խոշոր կառույցի աշխատանքային սկզբունքի, դերի ու նշանակության մասին է պատմում ստորև տպագրվող նյութը։**

# ՍԱՆՁՎԱԾ ԱՏՈՄ

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայաստանի 30 հազար քառակուսի կիլոմետր տարածքում քիչ չեն վայրերը, որտեղ ձմռանն ամեն ինչ սառչում-սառցակալում է, իսկ ամռանը շիկանում-այրվում։ Բայց քիչ չե՞ն նաև մարդիկ, որոնք միևնույն եռանդով են աշխատում ցանկացած պայմաններում՝ ինչպես ամռան տապին, այնպես էլ ցուրտ ձմռանը։

Այդպիսի մարդկանց ձեռքերով է կառուցվել մեր հանրապետության ամենաերիտասարդ քաղաքներից մեկը՝ Մեծամորը։ Պատմաբաններն ասում են, որ այդ քաղաքի տեղում հազարամյակներ առաջ գործել է աշխարհի հնագույն մետաղաձուլարաններից մեկը։

Նյութի զանգվածի և էներգիայի կապը, որն ընկած է ատոմային էներգիայի ազատման հիմքում, տեսականորեն հայտնաբերվել է մեր դարի սկզբին, հայտնաբերել է Էյնշտեյնը։ Ըստ այդ կապի, նյութի յուրաքանչյուր զանգված օժտված է անհեղի քանակությամբ էներգիայով, ընդ որում այդ էներգիայի չափը կախված է միմիայն զանգվածի մեծությունից։ Օրինակ, մեկ կիլոգրամ ցանկացած առարկա լրիվ էներգիայի վերածելու դեպքում կստացվի մոտավորապես երեսուն միլիարդ կիլովատտ-ժամ էներգիա։ Այդպիսի էներգիան դարի սկզբին նույնիսկ պատկերացնել անհնար էր։ Դրա հայտնագործողն անգամ չէր հավատում, որ մարդը կարող է սանձել այն։ Եվ երբ նրան հարցրին այդ էներգիան օգտագործելու հնարավորության մասին, մեծ գիտնականը ծիծաղեց.

— Ի՞նչ եք ասում։ Դեռ հարյուրամյակներ պետք է անցնեն, մինչև մարդկությունը սովորի օգտագործել նյութի մեջ թաքնված էներգիան։

Այդ հայտարարությունից անցել է ընդամենը յոթ տասնամյակ։ Աշխարհում գործող բազմաթիվ ատոմակայանների շարքում, արդեն մի քանի ամիս է ինչ էլեկտրաէներգիա է արտադրում նաև Մեծամորի ատոմակայանը։ Նրա 405 հազար կիլովատտ կարողությամբ առաջին բլոկն արդեն միացված է Անդրկովկասի ընդհանուր էլեկտրացանցին և ծառայում է ժողովրդական տնտեսությանը։

Իսկ ինչպե՞ս է արտադրվում էլեկտրականությունն այնտեղ։ Ինչպես արդեն ասվեց, նյութի յուրաքանչյուր զանգված օժտված է հսկայական սեփական էներգիայով։ Սակայն զանգվածն ամբողջովին էներգիայի վերածել հնարավոր չէ սկզբունքորեն։ Հնարավոր չէ ատոմի միջուկում ոչնչացնել նեյտրոններն ու պրոտոնները, կարելի է միայն նրանց խմբավորել այլ ձևով, այնպես, որ նոր ըստեղծված միջուկներն ունենան ավելի փոքր զանգված։ Զանգվածների հենց այդ տարբերությունն էլ արտազատվում է ջերմության ձևով, որը կարելի է օգտագործել տարբեր նպատակներով։

Ատոմային ռեակտորում էներգիան առաջանում է ուրանի միջուկի ճեղքումից։ Եվ չնայած այս դեպքում ջերմության է փոխարկվում միջուկի զանգվածի ընդամենը մեկ հազարերորդական մասը, այնուամենայնիվ մեկ կիլոգրամ ուրանը տալիս է մոտավորապես երեք միլիոն կիլովատտ-ժամ էներգիա։ Իսկ դա երեք միլիոն անգամ ավել է, քան տալիս է նույնքան քարածխի այրումը։ Իհարկե, կարելի է առարկել, ասելով, որ ուրանի արդյունահանումը շատ ավելի դժվար է։ Սակայն դա ևս հաշվի առնելով, ատոմային էներգիան մոտ 400 անգամ էժան է քարածխից ստացվող էներգիայի համեմատությամբ...

Այսպես, ահա, ատոմային ռեակտորում ծնվում է ջերմային էներգիան, որը գոլորշու միջոցով շարժման մեջ է դնում էլեկտրականություն ծնող տուրբինները։ Այսպիսին է բոլոր ատոմակայանների աշխատանքի սկզբունքը, այդ թվում նաև հայկական ատոմակայանինը։

Մեր հանրապետության հիդրոէլեկտրակայանների ու ջերմաէլեկտրակայանների ընտանիքին անդամագրված ատոմայինն առայժմ գործում է կես հզորությամբ, և չնայած դրան, արդեն հասցրել է մի քանի ամսվա ընթացքում մեր երկրի ժողովրդական տնտեսությանը տալ հարյուր միլիոնավոր կիլովատտ-ժամ էներգիա։ Իսկ մոտ ապագայում, երբ շարք մտնի նաև նրա երկրորդ բլոկը, նրա հզորությունը կհասնի ավելի քան 800 հազար կիլովատտի։

Բացի էլեկտրականություն արտադրելու հիմնական խնդրից, ատոմակայանը կատարում է նաև զուտ կենցաղային նշանակության ուրիշ բազմաթիվ դերեր։ Բանն այն է, որ ռեակտորում արտադրված շոգու ողջ հզորությունը չէ, որ տուրբինների միջոցով վերջին հաշվով վեր է ածվում էլեկտրականության։ Տուրբինին շարժում հաղորդելուց հետո, շոգու մի զգալի մասը «ազատվում է աշխատանքից»։ Ահա, այդ շոգու ջերմությունն էլ օգտագործվում է քաղաքի այն ձեռնարկություններում, որտեղ զգացվում է դրա կարիքը։

Ուրանի և մյուս ռադիոակտիվ տարրերի տրոհման ժամանակ, բացի ջերմության ձևով արտազատվող էներգիայից, ծնվում են նաև կենդանական ու բուսական աշխարհի համար վտանգավոր ճառագայթներ և մասնիկներ։ Դա հաճախ մարդկանց գցում է թյուրիմացության մեջ, և նրանք ատոմային էլեկտրակայանները վտանգավոր են համարում



digitised by A.R.A.R.@

կյանքի համար։ Սակայն ատոմակայանում ինչպես ռեակտորը, այնպես էլ ռեակցիայի մնացուկների պահպանման վայրը պատված են հաստ ու անթափանց մեկուսիչներով։ Իսկ շրջապատը հսկող սարքերն աչալուրջ հետևում են տեղանքի ռադիոակտիվության փոփոխություններին։

Այո՛, Հայաստանում արդեն գործում է ատոմակայանը, մեր երկրում, առաջին անգամ, բնական բարդ պայմաններում իրականացվել են նրա կառուցումն ու անխափան և անվտանգ շահագործումը։ Ետևում են մնացել այդ էներգետիկ հսկայի կառուցման հիմնական դժվարությունները։ Ատոմային կայանների կառուցման փորձ չունեցող «Հայէներգոշին» ինստիտուտի կոլեկտիվի համար, որը նախագծել էր կառույցը, անչափ դժվար կլիներ առանց փորձառու մասնագետների օգնության ավարտել աշխատանքը։ Նրանց օգնության հասան մեր Միության տարբեր հիմնարկություններ։ ՍՍՀՄ ԳԱ Ի. Կուրչատովի անվան ատոմային էներգիայի ինստիտուտի մասնագետները օգնեցին լուծել ռեակտորում ռադիոակտիվ նյութի տրոհումը ապահովելու հետ կապված հարցերը, ինչպես նաև նրա պահպանման, մնացուկների մեկուսացման և ուրիշ շատ խնդիրներ։ «Գլավատոմէներգիա» հատուկ վարչության և «Գլավէլեկտրոնախագիծ» ինստիտուտի Գորկու բաժանմունքի աշխատակիցները իրենց մասնակցությունը բերեցին կառուցման ու մոնտաժման գործում։ Ահա այս բարեկամությամբ է կառուցվել և նրանով է կանգուն Մեծամորի ատոմակայանը, որտեղ խաղաղ ծառայության է անցել ատոմը։

## „ԲԱՄ"-Ը ՃԱՄԲԱՐՈՒՄ

*Այդ օրը Հանքավանի «Նաիրիտ» ճամբարի տողանի հրապարակը անճանաչելի էր դարձել։ Հրապարակի միջով ձգվում էր Բայկալ-Ամուրյան մայրուղին՝ երկաթգծերի փոխարեն երեխաները կրով երկու զուգահեռ գիծ էին քաշել։ «Մայրուղու» տարբեր կողմերում գտնվող ստվարաթղթի վրա նկարված նորակառույց «քաղաքներում» եռում էին «շինարարական» աշխատանքները։ Շինարարները տարբեր ազգերից էին՝ ռուս, հայ, վրացի, կիրգիզ, ուկրաինացի և այլն։ Նրանց տարբերելը հեշտ էր. յուրաքանչյուրը կրում էր իր ազգային տարազը։*

*«Ուստ-Կուտ», «Զվյոզդնի», «Տինդա» և «Զարա» քաղաքներում մի քիչ «զբոսնելուց» հետո, մտնում ենք «ԲԱՄ» քաղաքը։ Այստեղ շենքերի, դպրոցների, մանկապարտեզների մանրամոդելները այնքան լավ են պատրաստված, որ մի փոքր հեռվից նայողին շատ բնական են թվում։*

*Բնակիչներից մեկը՝ առաջին ջոկատի պիոներ Հրաչիկը ինձ ծանոթացնում է քաղաքին։*

*— Մենք՝ «ԲԱՄ»-ի բնակիչներս, շատ ենք ուրախանում, որ մեր «քաղաքը» դուր է գալիս այցելուներին,— ասում է նա։*

*— Իսկ ո՞վ արեց Բայկալ-Ամուրյան մայրուղու այս խաղային մակետի կառուցման առաջարկը։*

*— Մեր ճամբարի պիոներսենյակում դրված է մի արկղ,— ասում է առաջին ջոկատից Աննան,— պիոներներն իրենց ցանկություններն ու առաջարկությունները գրում են փոքրիկ թղթերի վրա և գցում այդ արկղը։ Երկու օրը մեկ, դրուժինայի խորհուրդը արկղը բացում է, կարդում է արված առաջարկությունները։ Ընտրվում և ընդունվում են դրանցից ամենահետաքրքիրներն ու ամենանպատակահարմարները։ Բայկալ-Ամուրյան մայրուղու խաղային մակետը կառուցելու առաջարկությունը արել էին մի քանի ջոկատներ։*

*— Ներեցեք,— մեզ է մոտենում երրորդ ջոկատի պիոներ Վահանը,— այսօր մեզ մոտ տոնական օր է. այսօր առաջին անգամ մեր «քաղաքով» անցնելու է Գայի անվան գնացքը, դուք էլ մեզ հետ կգաք կայարան՝ գնացքին դիմավորելու։*

*«Կառամատույցում» ցնծություն է։ Բոլորի հայացքները ուղղված են «Զարա» քաղաքի կողմը, որտեղից կայարանապետի ազդանշանով, արդեն դուրս է եկել գնացքը։*

*Մեկ էլ լսվում է գնացքի սուլոցը։ Բոլոր «բնակիչները» թարմ ծաղկեփնջերով ողջունում են Գայի անվան գնացքի մուտքը «ԲԱՄ» քաղաքը։ Գնացքը, որը գործարանների արտադրամասերում մետաղամասեր փոխադրող սովորական էլեկտրասայլակ էր, կանգ է առնում կայարանում։ Կառամատույցում գտնվողները ծաղիկներ են նետում գնացքի կողմն ու երգում «ԲԱՄ» երգը։*

*Այնուհետև գնացքը կարճատև դադարից հետո շարժվում է դեպի «Կոմսոմոլսկ» քաղաքը։ Իսկ «ԲԱՄ» քաղաքում երկար ժամանակ շարունակվում է տոնական ցնծությունը։ Երեխաները երգում են աշխատանքին ու հայրենիքին նվիրված երգեր, պարում են ազգային պարեր։*

*Մինչև որ գիշերը շշնջաց նրանց ականջներին, թե արդեն ննջարանները գնալու ժամանակն է։*

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*



digitised by A.R.A.R.@



# ԿՏՏԿԵՆԻ ՏԻԳՐԱՆԻ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*



*ԿՏՏԿԵՆԻ ՏԻԳՐԱՆԻ*

Չափազանց հազվագյուտ և սակավ տարածված բույս է, հանդիպում է միայն Հայաստանում՝ Հրազդանի, Արփայի, Աշտարակի ձորահովտներում, քարքարոտ լանջերում և ժայռերում:

Թուփ է՝ 2–3 մետր բարձրությամբ: Ճյուղերը սկզբում շագանակագույն են, բաց գույնի ոսպնյակներով, այնուհետև կեղևը ստանում է գորշ մոխրավուն երանգ: Միջուկը գորշ սպիտակ է: Բողբոջները ձվաձև են: Տերևները կազմված են 5–7 տերևիկներից: Վերջիններս ունեն 8–15 սմ երկարություն և 2–6,5 սմ լայնություն, երկարավուն-ձվաձև են, սղոցա-ատամնավոր, վերին կողմից՝ մուգ, կանաչավուն, ներքևից՝ ավելի բաց գույնի: Տերևակները սկզբում ծածկված են նուրբ մազմզուկներով, որոնք հետագայում թափվում են:

Ծաղկաբույլերը նուրբ են, 5–7 սմ երկարությամբ: Պսակը դեղնականաչավուն է, 5–7 մմ տրամագծով: Պտուղն սկզբում կանաչավուն է լինում, իսկ հասունանալուց հետո ստանում է մարջանակարմրավուն գունավորում, ունենում է 5–6 մմ լայնություն, պարունակում է 3 կորիզ: Ծաղկում է մայիսին, պտուղները հասունանում են սեպտեմբերին:

Հայտնաբերել է անվանի բուսաբան Նիկոլայ Տրոիցկին 1936 թվականին Հրազդանի շրջանում: Մշակության մեջ չի հանդիպում, չնայած ուշքի է ընկնում դեկորատիվ բարձր հատկություններով: Հատկապես գեղեցիկ է ծաղկման և պտղաբերման շրջանում: Որպես բավականին չորադիմացկուն և քչապահանջ բույս խորհուրդ է տրվում լայնորեն օգտագործել Հայաստանի բարձր լեռնային շրջանների բնակավայրերը կանաչապատելու համար: Հաջողությամբ կարելի է մշակել հատկապես Ղուկասյանի, Ամասիայի, Ապարանի, Սիսիանի շրջաններում և Սևանի ավազանում:

Հրազդան քաղաքի սիրողներ-դպրոցականները Տիգրանի կտտկենին կարող են ուսումնասիրել հենց իրենց քաղաքի սահմաններում: Հրազդանի ձախ ափին՝ «Ծովինար» ռեստորանի մոտքի մոտ աճում են կտտկենու մի քանի խոշոր թփեր, որոնք ամեն տարի առատությամբ ծաղկում և պտղաբերում են: Իհարկե, խորհուրդ չենք տալիս այդ թփերից հերբարիում հավաքել, ոչ էլ մանավանդ, թփերը հանել և տեղափոխել: Դպրոցականները կենսաբանության ուսուցիչների ղեկավարությամբ, աշնանը կարող են հավաքել բույսի պտուղները, անջատել պտղամսից, այնուհետև ցանել հատուկ ծաղկամաններում: Ծիլերը կարելի է տնկել նոր թաղամասերում, որից հետո տեղափոխել դաշտ՝ մշտական տեղում աճեցնելու համար: Դպրոցամերձ հողամասում ունենալով ընդամենը մի քանի թուփ Տիգրանի կտտկենի, դուք աճեցրած կլինեք մի խիստ հազվագյուտ և անհետացման եզրին գտնվող բուսատեսակ, որը չպահպանելու դեպքում խոյաս կվերանա երկրի երեսից:

Ձեր ձեռքերով բազմացրած բույսերը կարող եք աճեցնել ոչ միայն դպրոցամերձ հողամասերում, այլ նաև քաղաքի կբուսայգիներում և պուրակներում, բակերում: Դա է այս հազվագյուտ տեսակի պահպանման ամենահուսալի երաշխիքը:

# ԵՐԿԱՐՈՏՆԵՐԸ ՈՒ ՆՐԱՆՑ ԻՆԿՈՒԲԱՏՈՐԸ

Առաջին անգամ հին եգիպտացիներն են օգտագործել ինկուբատորային ջեռուցիչ: Իհարկե, դա եղել է պարզունակ, նախնական ձևի: Մինչդեռ բնության մեջ հազարամյակներ ի վեր գոյություն է ունեցել մի յուրահատուկ ինկուբատոր, որը մարդիկ շատ ուշ են նկատել: Այդ մասին պատմել է Մագելանի արշավախմբից (1519—1522) մեկը, որը եղել էր Ավստրալիայում և այն քչերից էր, որը ողջ մնալով՝ վերադարձել էր հայրենիք: Բայց նրա պատմածն այն ժամանակ հեքիաթի տեղ են ընդունել:

Ինչպես գիտենք, ճուտ հանելը թռչուններից այնքան ջանք ու ժամանակ չի պահանջում, որքան կաթնասուններից: Մարին երկուսից չորս շաբաթ թուխս է նստում, իսկ վարուժանը որոշ չափով օժանդակում է նրան: Բայց կան թևավորներ, ասենք՝ հարավ-



digitised by A.R.A.R.@

ամերիկյան ջայլամը, որը թուխս նստելու գլխացավանքից էլ է ազատ. նա իր փոխարեն վառուժանին է թուխս նստեցնում: Միշտ այդպես է վարվում ավստրալիական երկարոտնիկը, կամ աղբահավը:

Աղբահավերի տարբեր տեսակներ տարբեր կերպ են լուծում նույն խնդիրը, սակայն ամեն դեպքում ճտահանման «տեխնիկայի» հիմքում ընկած է ինկուբատորի սկզբունքը. ոմանք ձըվերը դնում են հրաբխային տաք աղբյուրների կամ դեռ չսառած լավայի մոտերքում: Մյուսները օգտվում են ծովափի տաք ավազից կամ նեխած տերևներից:

Ածում են 10—13 ձու (հավի ձվից եռակի խոշոր), ձվերը շարում են ուղղահայաց դիրքով, ուրիշ թռչունների նման շուռումուռ չեն տալիս, և 9—12 շաբաթվա ընթացքում դուրս են գալիս անճոռնի, բայց բավականին տոկուն ճուտիկներ: Ամենադժվարը բընում հաստատուն ջերմաստիճան ապահովելն է. չէ՞ որ ավազը ցերեկը սաստիկ տաքանում է, իսկ գիշերը սառչում և ջերմաստիճանի տարբերությունը երբեմըն հասնում է 40 -ի: Իսկ ինչպե՞ս պահպանել կայուն 33,3° տաքություն: Դրա համար երկարոտնիկ աքլորը ցերեկը ցրում ու հավաքում է ավազե բույնը, անընդհատ խոնավ շերտեր լցնելով՝ սառեցնում, իսկ գիշերը հակառակն անում: Մերթընդմերթ գլուխը խրում է ավազի մեջ, որոշում անելիքը՝ տաքացնի՞, թե՞ սառեցնի:

Իրենց բներին ահռելի չափսեր են տալիս այն աղբահավերը, որոնք բույնը շինում են խոտ ու խազալից. դրանք մոտ երկու մետըր բարձրությամբ, մի քանի մետըր լայնությամբ թռչնային ամրոցներ են, որոնք ներքևից տաքացված են նեխման պրոցեսի ազդեցությամբ: Հատկապես տառապալի աշխատանք են կատարում այն աղբահավերը, որոնք ապրում են Ավստրալիայի կենտրոնական, չորային շրջաններում: Նրանց համար շատ դժվար է այդքան խոտ ու տերև հավաքելըն ու անհրաժեշտ ջերմաստիճանն ապահովելը: Այնտեղ բոլոր հասուն թռչունները տարվա տասնմեկ ամիսը առավոտից մինչև ուշ գիշեր զբաղված են լինում իրենց բների ջերմակարգավորմամբ: Ձմեռային անձրևների ժամանակ կամ ուժեղ ցրտերին նրանք հավաքում են ճյուղեր, տերևներ, խոտեր, թաղում են գետնի տակ, որպեսզի խոնավ ու նեխման վիճակում պահեն, մինչև սկսվեն չորային եղանակները: Հենց այդ նեխած բույսերով էլ տաքացնում են բները ցուրտ եղանակին: Ամռան շոգերին ցերեկը անընդհատ հաստացնում են «ամրոցի» պարիսպը, որպեսզի քիչ ջերմություն ներթափանցի, իսկ աշնանը՝ ցերեկը բացում են, գիշերը՝ ծածկում: Ամրոցը աքաղաղի հսկողության տակ է լինում. նա հավերին իրավունք է տալիս միայն, որ բարձրանան բույնը, ձուն ածեն ու գնան: Ձուն թաղում են խորը, և ճտերը ծնվում են երբեմն մեկ մետր խորքում, 10—15 ժամվա ընթացքում հազիվ են դուրս գալիս բնի մակերես:

Եվ ահա այնպես է ստացվում, որ թուխս նստելու գլխացավանքից ազատվելու հնարքը ավելի թանկ է նստում խեղճ երկարոտնիկների վրա:

Տեղի բնակիչներից յուրաքանչյուրը տեր է կանգնում մոտակա բներից մեկնումեկին և պարբերաբար հավաքում է ձվերը: Աղբահավերը ընտանի հավերի նըման վարժվում են մարդկանց և գալիս են գյուղացիներից կուտ ուզելու:

# ԱՐՋԻ ՊԱՐԸ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

Ձեռնասուն արջին կապել ուռենուց,
Հոգնած ծեր գնչուն անտառի խորքում
Մտել էր խոր քուն:
Իսկ արջը, հոգնած շրջագայելուց,
Պոկեց պարանը ու բացատ գնաց:
Հեռվից տեսնելով իր ընկերներին,
Իսկույն բարձրացավ ետին թաթերին,
Գեղեցիկ պարով մոտեցավ նրանց...
Ընկերները թե.— Բարև՜, օ՜, բարև՜,
Ո՞նց ես սովորել այդքան լավ պարել:—
Պատասխան տվեց արջը տրտմագին.
— Այդ հարցը տվեք տիրոջ մտրակին:



*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

1922-Арм.ССР



digitised by A.R.A.R.@



# ԱՌՅՈՒԾԸ ՎՏԱՆԳԻ ՄԵՋ Է

*Վերջին քսան տարիների ընթացքում աֆրիկյան առյուծների թիվը կրկնակի չափով պակասել է. 400 հազարից հասել է 200 հազարի: Կրկնակի չափով փոքրացել է նաև առյուծների բնակության տարածությունը: Դրա գլխավոր պատճառն այն է, որ Աֆրիկայում մշակովի հողերի տարածությունն ընդարձակվում է սավաննայի՝ արևադարձային տափաստանների հաշվին, որտեղ առյուծներն են ապրում: Առյուծների ոչնչացմանը նպաստում է նաև այն հանգամանքը, որ գնալով ավելի է մեծանում այն թունավոր նյութերի քանակը, որ դաշտերում դնում են անասնապահությանը վնաս հասցնող գիշատիչներին կոտորելու նպատակով: Գիտնականները երկյուղ են հայտնում, որ եթե այդ կոտորածի դեմ միջոցներ չձեռնարկվեն, ապա մեր հարյուրամյակի վերջում Աֆրիկայում կմնա միայն մի քանի հազար առյուծ:*

# ԴԱԼՏՈՆԻԿ ՄՈԾԱԿՆԵՐ



*Բուդապեշտի «Տունգսրամ» ձեռնարկության մասնագետները ստեղծել են էլեկտրական նոր լամպ, որն արձակում է 580—600 մկ ալիքի երկարության դեղին լույս: Մոծակները այդ լույսը չեն ընկալում, ուստի և հեռու են մնում: Հիմա արդեն ամառն երեկոներին ամառանոցում կարելի է առանց մոծակներից վախենալու բաց անել պատուհանները:*


Լույս է տեսնում 1928 թվականից

№ 7 հուլիս 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ՍՍՀՄ պետական հիմնը . . . 2
Մեծանում է հարյուր ու մեկ տարով — ՀՐ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ 3
Ամառային ձայներ — Ա. ԱՎԱԳՅԱՆ . . . 5
Հրավեր — Վ. ԿԱՐԵՆՑ . . . 5
Սեղանկացիների դպրոցը — Զ. ԲԱԼԱՅԱՆ . . . 6
Երազներով հրաշալի — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . 9
Ալեքսանդր Մեծն ու մոծակը — Զ. ԽԱԼԱՓՅԱՆ . . . 10
Ռաֆայել Իսրայելյան — Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ . . . 12
Մայրաքաղաքի սիրտը — Ռ. ԽՈՐԱՅԵԼՅԱՆ . . . 12
Ալեքսանդր Թամանյանը և մանուկները . . . 14
Երևան, իմ Երևան . . . 15
Թևավոր խոսքեր . . . 16
Հեռավոր անցյալը դառնում է մոտիկ — Հ. ՀԱԿՈԲՅԱՆ . 16
«Միշտ առաջ. միայն դեպի հաղթանակ» — Մ. ԱԼԵՔՅԱՆ . 16
Հյուրընկալել էր հայրենիքը — Վ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ . 18
Սանձված տամ — Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . 19
«ԲԱՄ»-ը համբարում — Մ. ՍՈՒԿԱՍՅԱՆ . . . 20
Կոտկենի Տիգրանի — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . 21
Երկարոտնիկներն ու նրանց ինկուբատորը . . . 21
Արջի պարը — Մ. ԿՈՐՅՈՒՆ . . . 22
Առյուծը վտանգի մեջ է: Դալտոնիկ մոծակներ . . . 23


Շապիկի առաջին էջը՝ նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

---


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍՈՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Ե., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԻՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):



Пионер на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան-15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 01363: Պատվեր 1236: Տպաքանակ՝ 53306: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 8/VII 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



© «Պիոներ» 1977 թ.





digitised by A.R.A.R.@



ՀԱՍՄԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 13 տ., Արտաշատ



ՀԱՍՄԻԿ ՔՈՉԱՐՅԱՆ, 9 տ., Երևան



ԲԱԳԱՏՈՒՐ ՍԱՐԳՍՅԱՆ, 13 տ., Լեռնային Ղարաբաղ



ՍԱՄՎԵԼ ՂԱԶԱՐՅԱՆ, 12 տ., Արարատի շրջ.



ՋԻՂԱՆ ՕՀԱՆՅԱՆ, 11 տ., Արովյան

ՈՒՂՂՈՒՄ

«Պիոներ»-ի այս տարվա № 4-ում ասբեստ բառը սխալ է տպագրվել, որի համար ներողություն ենք խնդրում մեր ընթերցողներից։

digitised by A.R.A.R.@